# № ՊԻՈՆԵՐ 2-3



# ԽԱՂԸ ՊԻՈՆԵՐԻ ԱՆԲԱԺԱՆ ԸՆԿԵՐՆ Ե

*Ձմեռը թեպետ դուրսը ցուրտ ե, բակը, հրապարակները ձյունով ծածկված, բայց պիոներները հավաքված մի փոքրիկ սենյակում, կարող են զրուցել ու խաղալ։*

*Բացօդյա խաղերը տարբերվում են ակմբային խաղերից։ Ամենից առաջ անհրաժեշտ ե, վոր ակումբի կամ այն սենյակի, վորտեղ տեղի յեն ունենում խաղերը, պատուհանները նախորոք բաց անել, հատակը մաքրել և յեթե հող ե՝ թեթև ջրել։ Պետք ե ուշադրություն դարձնել, վորպեսզի պիոներները շատ չվազեն և քիչ աղմկեն։*

*Այս խաղերի մի մասը կարելի յե անցկացնել կոլլեկտիվում և ողակներում, հոկտեմբերիկների մեջ։*

### 1. ԱԳՌԱՎԸ ԹՌՉՈՒՄ Ե

*Խաղացողները կազմում են շրջան։ Ընտրում են պիոներներից մեկին, վորը կանգնում ե շրջանի մեջ և արտասանում ե. «Ճուտը թռչում ե», «աերոպլանը թռչում ե», «ագռավը թռչում ե» և այլն և միաժամանակ ձեռները վեր ե բարձրացնում։ Բոլոր պիոներները պետք ե ձեռները վեր բարձրացնեն, յեթե անվանած առարկան կարող ե թռչել։ Օրինակ, յեթե ասում ե «թռչունը թռչում ե» պետք ե բոլորը ձեռքերը վեր բարձրացնեն, իսկ յեթե ասվում ե «փայտը թռչում ե» ձեռքերը պետք ե ցածրացնել։ Ով սխալվեց նա պետք ե անցնի շրջանի ներսը։*

*Խաղն ավելի հետաքրքիր դարձնելու համար կարելի յե արտասանել. «ձուկը լողում ե», «ոձը սողում ե», «գնացքը գնում ե» և այլն։*

*Համաձայն արտասանած առարկայի պետք ե ձեռները բարձրացնել կամ թողնել։*

*Այս խաղը զարգացնում ե պիոների ուշադրությունը։*

### 2. ԽԱՂ ԶՐՈՒՅՑ

*Կոլլեկտիվի բոլոր պիոներներին հանձնարարվում ե մի փոքր թղթի վրա գրել վորևե հարց. օրինակ՝ պիոներական աշխատանքների, ընտանիքի, հեղափոխական վորևե խնդրի մասին և առհասարակ, ինչ հարցով վոր հետաքրքրվում են։ Պիոներներից մեկը բոլոր հարցերը հավաքում ե գլխարկի մեջ։ Հետո հերթով ամեն մեկը վերցնում ե մի հարց, բարձր կարդում և աշխատում ե պատասխանել հարցին։ Յեթե տված հարցին չի կարողանում պատասխանել, պատասխանում ե կողքի ընկերը։*

*Խաղն ամբողջովին կարող ե փոխվել զրույցի, վորին պետք ե մասնակցեն բոլոր պիոներները։*

### 3. ԼՈՒՅԿԻ ՀԱՎԱՔԵԼ

**(Հոկտեմբերիկների խաղ)**

*Խաղի ղեկավարը յերկու կամ չորս համրանքի տակ, ցրում ե հատակի վրա մի քանի տուփ լուցկի։ Տրված հրահանգի համաձայն, հոկտեմբերիկները սկսում են հավաքել լուցկիները և ամեն մեկն աշխատում ե հավաքել վորքան կարելի յե շատ։*

*Ով շատ ե հավաքում, խաղը տարած ե համարում։*

*Պետք ե ուշադրություն դարձնել, վոր լուցկիները չը կոտրատվեն և վոտների տակ չը տրորվեն։*

### 4. ԳԱԶԱՆ ԹՌՉՈՒՆ ՍՈՂՈՒՆ

*Խաղացողները նստում են շրջան, ղեկավարը կանգնում ե շրջանի մեջ և ցածր արտասանում «գազան», «թռչուն», «սողուն» և հետո աչքով ցույց ե տալիս խաղացողներից մեկին և համարում մինչև 10։ Այն պիոները, վորին ցույց ե տալիս ղեկավարը, պետք ե մինչև 10 համարելը, համաձայն տրված կենդանու հատկության, ասի մի թռչունի, գազանի, սողունի անուն։ Ով չի կարող պատասխանել, կանգնում ե շրջանի միջև։*

### 5. ՏԱՌԵՐԻՑ ԲԱՌԵՐ ԿԱԶՄԵԼ

*Կոլվարը կամ ողակավարն ասում ե վորոշ թվով տառեր և առաջարկում ե այդ տառերից կազմել վորքան կարելի յե շատ բառեր, օրինակ՝ տրվում են հետևյալ տառերը — կ, պ, ո, ն, ա, ր, ի, ե. և այլն։ Այդ տառերից կարելի յե կազմել հետևյալ բառերը՝ կապ, պար, պիոներ և այլն։*

*Այս խաղը կարելի յե տանել և ողակներով, այն ողակը, վորը նշանակված ժամանակի ընթացքում կազմում ե մյուս ողակներից ավելի շատ բառեր, տանում ե խաղը։*

## ՅԵՐԵՍՆԵՐՍ ԴԵՊԻ „ՊԻՈՆԵՐ"-Ը



*— Զարթիր «Պիոներ», բավական ե քնես։*




*— Միայն շապկով ինչպես մարդամեջ դուրս գամ։ Նյութ տվեք ե։*
*— Քիչ սպասիր, ժամանակ չունենք։*

ԵՐՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում—պատրա՛ստ

# ՊԻՈՆԵՐ

ՕՐԳԱՆ
ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ

*29 ՆՈՅԵՄԲԵՐԻ 1925*

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

# ПИОНЕР

Орган Ц. Б. Юных Пионеров при Ц. К. Л. К. С. М. Армении
Ежемесячный журнал

## № 2-3



ԵՐԵՎԱ՛Ն 1925



Ա. ՇԱՀԳՅԱԼԴԻ

# ՀՈԿՏԵՄԲԵՐ—ՆՈՅԵՄԲԵՐ

Ութը տարի յե արդեն, ինչ գոյություն ունի Խորհրդային իշխանությունը Ռուսաստանում։ Ութ տարի յե անցել այն օրից, յերբ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը, գյուղացիների հետ միասին, իր իշխանությունը հայտարարեց յերկրագնդի մեկ վեցերորդ մասում։ Ութ տարի յե, ինչ ամբողջ աշխարհի բուրժուազիան հանգիստ չունի Հոկտեմբերի-կոմունիզմի ուրվականից, բանվոր դասակարգի իշխանությունից։

Հինգ տարի յե արդեն, ինչ գոյություն ունեն խորհուրդները Հայաստանում։ Հինգ տարի յե անցել այն օրից, յերբ Հայաստանի բանվորները ու գյուղացիները վերցրին յերկիրն իրենց ձեռքը։ Հինգ տարի յե, ինչ տապալվել ե դաշնակ խմբապետների անիշխանությունը։

Հեշտ ե ասել – վերցրել ե իշխանությունը— դժվար ե, շատ դժվար աշխատանքը։

Յերկար ժամանակ ե, վոր բանվոր դասակարգը կռվում ե իրեն շահագործողների դեմ։ Մեր, խորհրդային յերկրում նրա կռիվը սկսել ե սրանից 50—60 տարի առաջ։ Սկզբում անկազմակերպ, փոքրիկ խմբակներով, փոքրիկ գործադուլներով, միտինգներով, դեմոնստրացիաներով, հետո, քիչ-քիչ, փորձառություն ձեռք բերելով— հետզհետե ուժեղացել ե բանվոր դասակարգը։ Քսան տարի սրանից առաջ, 1905 թվականին, նա բարձրացնում ե հեղափոխության դրոշակը՝ տապալելու ցարական Նիկոլայի թագավորությունը։ Բայց 5 թվականին բանվոր դասակարգը հաղթվում ե։ Ցարական կառավարությունն ամեն միջոց ձեռք ե առնում քարուքանդ անելու բանվորական միությունները, կազմակերպությունները, բանվոր դասակարգի կուսակցությունը։ Զուր եյին ցարական կառավարության աշխատանքները— մեր կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը նորից ե հավաքում իր ուժերը, կազմակերպում իր շարքերը՝ նորա նոր կռիվների, նորանոր հեղափոխությունների համար։

Յերկար, շատ յերկար ժամանակ ե, ինչ գյուղացիները կռվում են իրենց շահագործողների դեմ։ Մի քանի անգամ գյուղացիները բունտեր են բարձրացրել, այրել են հողատերերի ունեցվածքը, խլել նրանց հողերը, բայց միշտ հաղթվել են — չեն ունեցել իրենց ղեկավարը, չեն ունեցել իրենց լավ կազմակերպողը։

Բանվորներն ել, գյուղացիներն ել կռվել են իրենց շահագործողների դեմ, կռվել են կապիտալիստների, գյուղացիների, հաստափորերի դեմ։ Շատ զոհեր են տվել այդ կռվի ընթացքում, շատերն են կախվել, աքսորվել, տանջվել ու չարչարվել։ Հարյուր հազարներ, հազար-հազարներ են ընկել այդ կռվի ժամանակ։

Սկզբում կռիվը վարում եյին անջատ-անջատ— հաղթվում եյին։

Մեր կուսակցությունն եր, վոր Լենինի ղեկավարությամբ սկսեց աշխատել այս յերկու դասակարգի կռվի միացած ճակատ ստեղծելու։ Բանվոր դասակարգը, յեթե ցանկանում ե հաղ-

թել, պետք է դաշն կապի գյուղացիների հետ. գյուղացիները, յեթե ցանկանում են հաղթել, պիտի կռվեն բանվորների հետ միասին։ Այս եր մեր կուսակցության կոչը։ Այս միության ժամանակ բանվորն է, վոր պետք է լինի ղեկավարը, բանվորն ավելի կազմակերպված է, ուժեղ։

Ու բանվոր դասակարգի ղեկավարությամբ գյուղացիներն ու բանվորները հարձակվեցին ցարական կառավարության վրա 1917 թ. փետրվարին — տապալեցին այն։ Իշխանությունն անցավ կապիտալիստներին, Կերենսկու կառավարության։ Հարկավոր եր վերացնել և այդ հարուստների իշխանությունը։ Մեր կուսակցության ղեկավարությամբ բանվորներն ու գյուղացիները 1917 թվի հոկտեմբերին (նոր տոմարով նոյեմբերին) տապալեցին հարուստների իշխանությունը, հայտարարեցին բան. գյուղացիական իշխանություն, հայտարարեցին խորհուրդների իշխանություն։




Չեր լինի Հոկտեմբերը, յեթե չլիներ բանվորների և գյուղացիների միությունը։ Ութ տարի յե արդեն, ինչ այդ միությունն ամրանում, պնդանում։ Դեռ շատ խնդիրներ մենք ունենք լուծելու—կլուծենք, յեթե սրանից հետո էլ այդ միությունն ամուր մնա։

Հոկտեմբերը չսիրեցին Վրաստանի Մենշեվիկները, Ադրբեջանի Մուսաֆաթիստները և Հայաստանի Դաշնակները։ Ցերեքն էլ իրար հետ մրցում եյին հարուստներին լավ ծառայելու գործում։ Հայաստանում դաշնակներն սկսեցին իրենց գործը, սկսեցին կոտորածները, ավերումները, թալանը, կոփերը։ Շատ տանջվեցին, չարչարվեցին Հայաստանի բանվորներն ու գյուղացիները խմբապետների ձեռքին։ Մերկ, սոված, նրանք սկսեցին պատրաստվել քշելու դաշնակներին յերկրից, տապալելու մավզերիստների կառավարությունը։

Ու Հայաստանի բանվորներն էլ, գյուղացիներն էլ հոկտեմբերյան կարմիր Բանակի ոգնությամբ կատարեցին իրենց Հոկտեմբերը, 20 թվի նոյեմբերին, սրանից ուղիղ 5 տարի առաջ։ Հինգ տարի յե, ինչ գոյություն ունի Հայաստանում Հոկտեմբերը։

Ի՞նչ կատաղի կռիվ սկսեցին հոկտեմբեր-նոյեմբերի դեմ բոլոր խմբապետները, գիշատիչները, բուրժուաները, հողատերերը։ Ել ով ասես իր ուժը չփորձեց հաղթելու խորհուրդներին, ջարդելու բանվորագյուղացիական իշխանությունը, քանդելու բանվորների և գյուղացիների միությունը։ Ել Կալեդին, էլ Դենիկին, Կոլչակ, Յուդենիչ, Վրանգել, էլ Գերմանիա, Անգլիա, Ֆրանսիա, Իտալիա. Ամերիկա, Ցապոնիա, էլ Նժդեհ, Մարտիրոս, Սասունցի Կարո, էլ Դալի-Ղազար, էլ վորն ուզես, բոլոր յերկիրների, բոլոր հաստափորերն ու նրանց հլու հպատակ ծառաներն իրենց ուժը փորձեցին մեզ վրա։ Կռվեցին թնդանոթով, պուլիմյոտով, հրացանով, կրեյսերով, զրեհնոուտով, աերոպլանով, գազերով, ամեն ինչով, վոր հաղթեն բանվորներին էլ գյուղացիներին էլ։ Չկարողացան. չեն էլ կարող։ Մեր ընկույզը շատ ամուր է, ով ուզում է ատամներով ջարդել, կջարդվեն նրա ատամները։ Մեր մուրճը լավ պողպատից է, ով գալիս է եդ մուրճը խլելու՝ գլուխը կրկտրվի։ Մեր մանգաղը շատ սուր է, ով ուզում է կտրել, վայ նրան։ Այդ բոլոր կռիվների ընթացքում հաղթեցին խորհուրդները, հաղթեցինք մենք, մեր կարմիր բանակը, մեր բանվորների ու գյուղացիների միջոցով։ Հաղթեցինք մեր թշնամիներին պատերազմի դաշտում, պատերազմի ճակատում։

Մենք կռվել չենք ուզում, մենք պատերազմ չենք ուզում հիմա, բայց յեթե խելքը կորցրած համաշխարհային բուրժուան ուզեց մեր դեմ կռվի՝ նա իր պատասխանը կստանա։ Ամրացնենք, ուժեղացնենք մեր կարմիր բանակը։

Համաշխարհային պատերազմներից, քաղաքացիական կռիվներից, ազգամիջյան կոտորածներից մեր յերկրի տնտեսությունը բոլորովին քայքայվեց։ Յերկաթուղին փչացավ, գործարանները կանգնեցին, գյուղատնտեսությունն ընկավ։ Մենք վատ ժառանգություն ստացանք, ամեն ինչ քայքայված դրության մեջ։ Հարկավոր եր մեր տնտեսությունը բարձրացնել—քայքայված տնտեսությամբ սոցիալիզմ կառուցել չի կարելի։

Ու սկսվեցին մեր կռիվը, մեր աշխատանքն այս ճակատում էլ: Ու կամաց կամաց սկսեցինք բուժել մեր վերքերը. — որ է մնացել 20—21 թվերը, 22 թիվը: Մերկ եյինք, բոբիկ, սոված. ուրախ մարդ չկար: Բանվորներն ու գյուղացիները կպան տնտեսությունը վերականգնելու աշխատանքին: Ու տարեց-տարի, հասարակ աչքով, կարելի յեր տեսնել, թե ինչպես մենք առաջ ենք գնում: Բանեցին գործարանները, աշխատել սկսեցին գավառները, յերկաթգիծը, գյուղատնտեսությունն սկսեց վոտքի կանգնել: Հիմա արդեն քիչ է մնում հասնենք նախքան պատերազմի դրությանը: Այդ դեռ բավական չէ, մեզ հարկավոր է հսկա քայլերով առաջ գնալ: Սկսում ենք կառուցել նոր գործարաններ, նոր ելեքտրոկայաններ, նոր ջրանցքներ, ստեղծում ենք նոր կյանք, կառուցում ենք սոցիալիզմը:

Հաղթում ենք և տնտեսական ճակատում: Դժվար է, շատ դժվար այս աշխատանքը, բայց բանվորի մուրճը և գյուղացու մանգաղը, այդ հոկտեմբերի ազդանշանը, կհաղթի իր ճանապարհին բոլոր դժվարությունները:

Աղքատ եր մեր յերկիրը, տգետ եր, անկուլտուրական եր մեր յերկիրը, վոշխոտ ու կեղտոտ եր մեր յերկիրը: Այդպես եյին ցանկանում հարուստները: Պետք է լուսավորել, կուլտուրական դարձնել մեր մթությունը: Այս աշխատանքներին էլ լծվեց խորհրդային իշխանությունը: Վերացվում է անգրագիտությունը, կռիվ է հայտարարված անկուլտուրականությանը:

Ութը տարի բանվորների և գյուղացիների աշխատանքը տարվում է հաղթահարելու մեր թշնամիներին, կառուցելու սոցիալիզմը: Այդ հսկա աշխատանքների ղեկավարությունը վերցրել



Ի. Ստալին

է իր վրա կուռ ու անհաղթ կոմմունիստական կուսակցությունը, նրան ոգնում է Լենինյան կոմյերիտմիությունը:

Այս աշխատանքների ընթացքում մենք մենակ չենք, մեզ ոգնում է ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը, մեզ ոգնում են արևելքում ապրող ճնշված ժողովուրդները:

Հոկտեմբեր-նոյեմբերը շարժման մեջ է գրբել ամբողջ յերկրագունդը, բոլորն էլ սպասում են իրենց Հոկտեմբերին:

Կեցցե բանվորների և գյուղացիների իշխանությունը:

Կեցցե, Հոկտեմբերը:

Կեցցե, Նոյեմբերը:

Կեցցե, Կոմմունիզմը:

Պիոներ, պատրաստ ես յուրացնելու ընկ. Լենինի հոկտեմբերի ավանդները: Պիոներ, պատրաստ ես գնալու կոմկուսակցության ճանապարհով:

**ՊԻՈՆԵՐՆԵՐՍ ԿԳՆԱՆՔ ԻԼՅԻՉԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ, ԿՈՄՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ, ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՅԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ:**

Հ. ԱԶԱՏՅԱՆ

# ԻՆՉ ՏՎԵՑ ՆՈՅԵՄԲԵՐԻ 29-Ը

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում կատարված հեղաշրջումը սոցիալիստական հեղաշրջում եր, վորովհետև դրա միջոցով մեր յերկրի բանվորն ու գյուղացին իրենց սեփականություն դարձրին հողը, գործարանները, յերկաթուղին, բանկերը, խոշոր առևտուրը և այդ բոլորի հետ միասին՝ յերկրի իշխանությունը։ Առաջին անգամ մեր յերկրի պատմության մեջ բանվորն ու աշխատավոր գյուղացին ազատագրվեցին շահագործող դասակարգերի լծից և իրենց սեփական իշխանությունն ստեղծեցին։ Սակայն իրենց իշխանությունից բանվորն ու գյուղացին օգտվում են և սրանից հետո էլ օգտվելու յեն վոչ թե շահագործելու ու կեղեքման, վոչ թե ուրիշների հաշվին ապրելու, այլ շահագործմանն առհասարակ վերջ դնելու նպատակով։ Իսկ շահագործմանը, թշվառությանը և մշտավոր խավարին կարելի յե ամբողջովին վերջ դնել միայն սոցիալիստական հասարակակարգում։

Նոյեմբերի 29-ին մեզ մոտ կատարված հեղաշրջումով բանվորն ու գյուղացին սոցիալիստական կարգեր միանգամից ստեղծել չեյին կարող. բայց ստեղծեցին այն պայմանները, վորոնք իրենց հնարավորություն են տալիս յերկրի տնտեսական ու կուլտուրական ամբողջ կյանքը սոցիալիզմի ուղիներով տանել։

Սոցիալիստական հասարակակարգ կազմակերպելու համար պահանջվում ե ունենալ և բարձր տնտեսություն և բարձր կուլտուրա, վորոնցից այսօր մենք դեռ զուրկ ենք։ 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի բանվորն ու գյուղացին Դաշնակցության ղեկավարությամբ գործող մեր յերկրի կալվածատերերից, կապիտալիստներից ու այլ շահագործողներից աղքատիկ ժառանգություն ստացան։ Յերկիրը տնտեսապես կործանված եր։ Ժողովրդական լայն մասսաները տգետ ու անգրագետ եյին, զուրկ քաղաքական դաստիարակությունից և բոլոր հարևան ժողովուրդների հետ թշնամացած։ Հինգ տարվա ընթացքում խորհրդային իշխանությանը հաջողվեց վերացնել քաղցը, վերականգնել գյուղատնտեսությունը և քաղաքի տնտեսական կյանքը։ Նա կարողացավ բարձրացնել աշխատավոր ժողովրդի քաղաքական գիտակցության մակարդակը, դպրոցական լայն ցանց ստեղծել, բոլոր ազգություններին պատկանող աշխատավորների մեջ յեղբայրական կապ հաստատել, ինչպես և բարեկամանալ մեր բոլոր հարևան ժողովուրդների հետ։

1925 թվի խորհրդային սոցիալիստական Հայաստանը 1920 թ. դաշնակցական Հայաստանի հետ համեմատել անգամ չի կարելի։ Այս հինգ տարվա ընթացքում մենք մեծապես առաջադիմել ենք։ Պարզ ե, վոր այսուհետև մեր բանվորի ու գյուղացու համար շատ ավելի հեշտ կլինի թե իր տնտեսությունը բարձրացնել և թե ժողովրդական ամենալայն մասսաների մեջ գիտություն և լուսավորություն տարածել։ Իսկ բարձր տնտեսությունը և բարձր կուլտուրա հենց այն տարրերն են, վորոնք սոցիալիստական կարգեր հաստատելու անհրաժեշտ նախապայման են ներկայացնում։

Մեր յերիտասարդ սերունդը աճում ու դաստիարակվում ե մի այնպիսի դարում, յերբ ամբողջ շահագործվող մարդկությունը, բոլոր յերկրների բանվորներն ու գյուղացիները կազմակերպվում ու կռվում են շահագործման ստրկության և մտավոր խավարի վերացման համար, կոմունիզմի համար։ Յեվ պետք ե հուսալ, վոր մեր այսօրվա պիոներները 8—10 տարուց հետո բախտ կունենան, բանվորների և գյուղացիների այժմյան սերնդի աշխատանքի վրա հենվելով, իրենց հեղափոխական ձեռքերով սոցիալիզմի վեհ գաղափարն իրականացնել, սոցիալիզմի մեծ շենքը կառուցել։ Բայց ամեն մի պիոներ պետք ե իմանա, վոր սոցիալիզմի շենքը կառուցելու գործը ամենադժվար գործերից ե։ Դրա համար պահանջվում ե ընդհանուր և մասնագիտական կրթություն ունենալ, քաղաքական գիտակցություն ձեռք բերել, ազնիվ և գիտակից քաղաքացի դառնալ։

Հայաստանի խորհրդայնացման հնգամյակի պատմական այս մեծ տոնի օրն ամեն մի պիոներ պիտի գիտակցի այդ բոլորը, արդեն տարած հաղթություններով վոգևորվի և մեր բանվորներին ու գյուղացիներին համարձակորեն հայտարարի. **«Յես պատրաստվում եմ ձեզ փոխարինել. առաջիկա 8—10 տարվա ընթացքում յես ձեռք կբերեմ յեվ գիտություն յեվ վորևե արհեստ, վորոնք ինձ հնարավորություն են տալու սոցիալիստական տնտեսություն յեվ սոցիալիստական կուլտուրա ստեղծել. միայն թե խորհրդային իշխանությունը աջակցի ինձ ընդհանուր յեվ տեխնիկական կրթություն ստանալ. յես միշտ պատրաստ եմ»։**

Միխ. Լեվիցին

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 25-Ի ԾՆՈՒՆԴԸ

Ամեն ինչ սկըսվեց գիշերը, երբ սառած կաթիլներով ձյունը խըփում էր անցորդների երեսներին, երբ կենտրոնը քնած՝ — ծայրամասերն արթուն էին։

Որացույցի մեջ չի գտնվի մի օր, որն այնքան խըտացած լիներ ող-



Ժամանակավոր կառավարության տապալման մասին Լենինը

տագործված նրա ամեն մի րոպեն, ամեն մի վայրկյանը։

Պետրոգրադը սպասում էր։

Մութ է։ Փխրուն ձյունը իր շերտով ծածկել է գետնի մերկությունը։ Լուռ է ամեն ինչ։

**Գիշերվա յերկուսն է** — Ռազմահեղափոխական կոմիտեյի զորքերը գրավել են կայարանը։ Շարժվեցին հեղեղի նման շինելների, բլուզների կույտեր, գրավեցին կամուրջները, էլեքտրակայանը, գլխավոր հեռագրատունը։ Առանց կըրակոցի գրավեցին։

Հակահեղափոխական գլխավոր հրամանատարի հրամանն էր.

— Հանուն Ազատության ու Պատվի 1,4 և 14-րդ կազակ գնդերին հրամայվում է դուրս գալ խռովարարների դեմ։

Կարդացին կազակներին հրամանը, նայեցին նրանք, ժպտացին և հայտնեցին։

— Զենք դուրս գա։ Զենք կոտրի մերոնց։ Թող կոչի Կերենսկին իր մինիստրներով։

**Առավոտյան ժ. 7-ին** — Հեռախոսային կայանը գտնվում է Ռազմահեղափոխական Կոմիտեյի ձեռքին։

**Առավոտյան ժ, 10-ին** — Օրվա լույսի հետ միասին փողոց դուրս յեկան մարդկային խմբերը։ Խմբերով գնում են։ Կարդում են պատերի վրա.

«Ժամանակավոր կառավարությունը տապալված է», Կերենսկին փախցել՝ Գատչինա յե փախել։ Իսկ այդ ժամանակ Ռազմահեղափոխական կոմիտեն ազատել է բանտերից բոլշևիկներին։

Դողում են բուրժույները։ Ոհ, ինչպես են դողում։

— Տեր իմ։ Սուրբ Աստվածածին։ Ինչեր պետք է լինեն։ Տեր՝ դու ազատես։

КЪ ГРАЖДАНАМЪ РОССІИ!

Временное Правительство низложено. Государственная власть перешла въ руки органа Петроградскаго Совѣта Рабочихъ и Солдатскихъ Депутатовъ, Военно-Революціоннаго Комитета, стоящаго во главѣ Петроградскаго пролетаріата и гарнизона.

Дѣло, за которое боролся народъ: немедленное предложеніе демократическаго мира, отмѣна помѣщичьей собственности на землю, рабочій контроль надъ производствомъ, созданіе Совѣтскаго Правительства — это дѣло обезпечено.

ДА ЗДРАВСТВУЕТЪ РЕВОЛЮЦІЯ РАБОЧИХЪ, СОЛДАТЪ И КРЕСТЬЯНЪ!

Военно-Революціонный Комитетъ Петроградскаго Совѣта Рабочихъ и Солдатскихъ Депутатовъ.

ազմահեղափոխական Կոմիտեյի կոչը՝ ժ. կառավարության տապալման մասին

**Ն ժամը 12-ին** — Ներքին գործ. մինիստրությունը րա համար է յեղել, որպեսզի չգիտենա, թե ինչ է կատարվում յերկրի ներսում։ Իսկ գործերը վատ, գործերը կեղտոտ են։ Իրար անցան — լավ է ուշ քան յերբեք։ Ցրեցին մի կոչ՝ որի մեջ ասված է՝ «Ժամանակավոր կառավարությունը կոչ է անում բոլորին, անմիտ խռովարարների դեմ պայքարելու համար»։

Իսկ Ռազմահեղափոխական Կոմիտեն, նույնպես հեռագրով հայտարարում է։

**— Տեղերում իշխանությունն անցնում է բանվորների, գյուղացիների յեվ զինվորների խորհուրդներին։**



հայտնում է գեն. Դուխոնինին



Լ. Կամենև

**Ժ. 2 անց 20 րոպե**—Կրոնշտադից ուղարկված են նավաստիների վաշտեր, «Ավրորա» ռազմանավը և չորս ականակիրներ։

**Ժ. 2 անց 25 րոպե**— Ցեխի մեջ թաղված գտնում են յերկու, խղճուկ, կծկված մարդ, շրջապատված զինվորներով։ Դրանք նախկին մինիստրներ Պրոկոպովիչն ու Գվոզդեվն են. նրանց տանում են Սմոլնի հարցաքննության։

**Ժ. 2 անց 35 րոպե.**— Կատարվեց։ Գործի կեսից ավելին արված է։ Պետրոգրադի խորհրդի հանդիսավոր նիստն է։ Ռազմա Հեղափոխական Կոմիտեյի անունից ընկ. Տրոցկին հայտարարում է.

—Ժամանակավոր կառավարությունն այլևս գոյություն չունի։

Առաջին շարքում նստած է Իլիչը, նրա կողքին Զինովյևը։

— Իլիչը այստեղ է—հայտարարում է նախագահը և ուժգին ծափահարություններից դղրդում է դահլիճը։

**Ցերեկոյան ժ. 5-ին** —Ձմեռային պալատ են ուղեվորվում զորքերը։ Զորքերի հետ զրահապատները։ Ձյուն է։

**Ժ. 6 անց 30 րոպե**—Պետրոպավլովյան բերդում շրջանային զինվորական շտաբն է։ Կոմիտեն յեկավ և առաջարկեց թողնել բերդը. 30 րոպե ժամանակ տվեց...

Ինչպիսի ջանջալ, դանդաղաշարժ մարդիկ են—«կառավարիչները». յերեսուն րոպե ժամանակ են տվել. իսկ նրանք ելի 10 րոպե ձգձգեցին։ Ցերեկի նիստ են գումարել, սիրում են խոսել։

Իհարկե, ինչպես մայրն է, այնպես ել յերեխաները—բոլորը կերենսկուցն են։

**Ցերեկոյան ժ. 7-ին** —Ձմեռային պալատի մոտ սպասում են։ Իսկ այնտեղ ներսում խոսում են։

**Ժ. 7 անց 10 րոպե** —Դեպի ձմեռային պալատ անցք չկա։ Հսկայական քարե վանդակում փակված են մինիստրները։

**Ժ. 8 անց 30 րոպե** —Ժամանակավոր կառավարությանն առաջարկված է անձնատուր լինել։ Առաջարկությունը քննության են դրել։ Վորոշեցին.

Դիմել քաղաքային Դումային պաշտպանություն ցույց տալու համար։

**Ժ. 8 անց 40 րոպե** —Սպասում ենք։

**Ցերեկոյան ժ. 9-ին** —Կրակոց։ Յերկրորդը, յերրորդը։ Կրակում է «Ավրորան»։ Դրխկացին, չխկչխկացին գնդացիրները։ Իսկ ռադիոն թռցնում է դողացող, մահամերձ հեռագիրը.

— Բոլորին. բոլորին. բոլորին. Ժամանակավոր կառավարությունը վորոշել է անձնատուր չլինել։

Հիմարներ։ Վորոշումը այլ բան է, իսկ կատարելը...

**Ժ. 9 անց 20 րոպե** —Ամենուրեք կրակում են։ Հրապարակը լիքն է մարդկանցով։ Անց կենալ չի կարելի։ Առանց արյունի բան դուրս չի գա։

**Ժ. 10 անց 45 րոպե**— Բացվեց Խորհուրդների Համառուսական Համագումարը։

**Գիշերվա ժ. 12-ին** —Գիշերն իր սև քողն է տարածել քաղաքի վրա։ Ձմեռային պալատի հրապարակում մութ է։ Մութ է, վորովհետև ձյունի սպիտակ սավանը կոխոտել են հազարավոր վոտքեր։ Կրակում են... Ընկնում...

**Գիշերվա ժ. 2-ին**— Ձմեռային Պալատը վերցված է։ Ժամանակավոր Կառավարությունը ձերբակալված.

— Կեցցե նորածինը։ Յերկար կյանք նրան։

Իսկ վառելիքը կբավարարի 10 որ միայն։ Գուշակում են մի շաբաթ կյանք...

Սակայն՝

Ապրում ենք ութը տարի...

Ութը տարի.

Հոկտեմբերի ծննդյան որից։







# ԿԵՑՑԵ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆԸ

*(Բեմադրություն)*

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

**ԲԱՑԻԼՆԵՐ**

1.—**Թոքախտը**—*կապույտ բալախոնով*
2.—**Դիֆտերիտը**—*կանաչ բալախոնով*
3.—**Քութեշը**—*վարդագույն բալախոնով*
4.—**Կարմրուկը**—*սպիտակ պուտավոր բալախոնով*
5.—**Փոշին**—*մոխրագույն ցնցոտիներով*
6.—**Ցեխը** —*դեղնագույն ցնցոտիներով*
7.—**Արեվի ճառագայթը**—*բաց-դեղին շորով. գլխին ելեքտրական լամպա յեվ ճառագայթներ*
8. **Օդը**—*կանաչագույն ծխախոտի թղթով—միշտ շարժման մեջ*
9. **Ջուրը.**—*կապույտ-կանաչ շորով, ծգված իր շերտերով հատակին*
10. **Ֆիզկուլտուրա**—*սպորտի կարմիր գույնի հագուստով։ Բոլորը կրծքերին ունեն համապատասխան մակագրություն։*
11. **Պիոներները։**

---

*ԲԱՑԻԼՆԵՐԻ ԽՈՒՄԲԸ արտասանում է*
*Մենք, բացիլներս բերում ենք մեզ հետ*
*Հիվանդություններ շատ ու բազմազան.*
*Փոշի, ախտ ու կեղտ մեզ միշտ օգտավետ,*
*Թեև ձեզ համար բանի չենք նման։*
*Մենք շատ ենք սիրում խոնավ նկուղներ,*
*Պայծառ արևը մեզ միշտ թշնամի,*
*Մեր հունձի համար յեկան լավ օրեր,*
*Եյ դու, պիոներ, եդ լավ իմացի։*

*ԹՈՔԱԽՏԸ*
*—Յես ես աշխարհում ուժեղից ուժեղ,*
*Ու իմ անունն է Թոքախտ, մեծ Թոքախտ.*
*Իմ սուր ճանկերում թե մարդ, թե մժեղ,*
*Ինձ ընկեր չկա, անհաղթ եմ, անհաղթ.*
*Բացիլս ու փոշիս աշխարհ են թռչում,*
*Անկում ու ճանկում բյուրավոր զոհեր.*
*Ծերին, մանուկին գետին են շրջում,*
*Բացիլս ու փոշիս աշխարհին նվեր։*

*ԿԱՐՄՐՈՒԿ ՅԵՎ ԴԻՖՏԵՐԻՏ (Արտասանութ.)*
*—Յերեխաներից միշտ մահն անպակաս՝*
*Չկա փրկություն մեր բացիլներից.*
*Յերկու ընկերով մի մի պատուհաս,*
*Վրեժ ենք առնում նորածիններից։*
*ԿԱՐՄՐՈՒԿԸ—Յեթե մանուկը կամ մատը քերծի,*
*ԴԻՖՏԵՐ.—Կամ կեղտոտ մի բան թե բերանն ածի,*

*ՅԵՐԿՈՒՍՈՎ ՄԻԱՍԻՆ*
*—Մենք հենց կեղտի հետ բկից կուլ կերթանք*
*Ու բացիլներիս տաք անկյուն կտանք։*

*ՑԵԽԸ ՅԵՎ ՓՈՇԻՆ*
*Գյուղ ու քաղաք և ամեն տեղ*
*Ապրում ենք մենք՝ փոշի ու ցեխ.*
*Վորտեղ ցեխը, վորտեղ փոշի,*
*Բացիլն էնտեղ քեֆ կքաշի։*
*Ցեխ ու փոշի վարակիչ են*
*Թող վոր մարդիկ փոշի շնչեն։*
*Եյ, բացիլներ, մեզ հետ և դուք,*
*Վոր կոտորենք ծեր ու մանուկ։*

ԲԱՑԻԼՆԵՐ խմբովին
Մեր վճիռը շատ դրական՝
Մենք աշխարհին տեր- տիրական.
Աղքատների համար մանգաղ,
Հնձենք, հնձենք, լցնենք գաղաղ։
Աղտոտ-կեղտոտ մութ թաղերում,
Նեղ ու խոնավ օթաղներում
Ապրենք, աճենք, միշտ նորածիլ
Հազար-հազար կծիկ բացիլ։
Մեզ թշնամի բժիշկ ու դեղ,
Մեզ թշնամի —ջուր ու արև։
Մաքուր օդը հո կա ու կա,
Յեվ բոլորը մեզ ահ ու մահ.
Բայց լավն են է—չեն ճանաչում
Մեզ գյուղերում, գավառներում.
Մեր դեմ կռվի և վոչ մի զենք.
Մենք էլ նրանց խնայող չենք։

ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱ

—Հաղթությունը հո հեշտ բան չի՛,
Ի՞նչ եք դարձել դուք գունաչի.
Այո, բացեք դուք խոր վերքեր.
Հիմա տեսեք կռիվը մեր.
Յես գալիս եմ, ուռա՜, ուռա՜...
Իմ անունն է ֆիզկուլտուրա.
Լսե՛ք, լսե՛ք դուք իմ կանչս,
Բացիլներիդ գլխին չանչս.
Ինձ օգնական ավե ու օդ.
Նաև մաքուր ջուրը մեզ մոտ.
Քաղհան կանենք մենք ծիլ-ծիլ
Թե հին, թե նոր ամեն բացիլ։







ՕԴԸ—Ա՛յ բացիլնե՛ր, ասում ենք ձեզ —
Ֆիզկուլտուրան և մեկ էլ յես.
Լուսամուտից ներս կխուժեմ,
Հիվանդ մանկանց միշտ կբուժեմ։
ԲՈԼՈՐԸ—Մաքուր օդում, ադերք, ադիրք,
Պիոներներ, և խաղ, և յերգ,—
Մեզ են կանչում կարմիր, կանաչ
Դաշտեր, ձորեր, սար, սարալանջ։
ՋՈՒՐԸ—Յեթե կուզեք առողջ մնաք,
Պետք է ջրով ձեզ լվանաք.
Բացիլներին ջարդեք կռվով
Վոչ թե հում, այլ յեփված ջրով։
Ջրով, սապնով փարակման դեմ՝
Առողջություն պիտի գտնեք.
Յեփած ջուրը բացիլի դեմ.
Յեփած ջրով նրան խեղդեք։

ԱՐԵՎԻ ՃԱՌԱԳԱՅԹԸ

—Հեյ բացիլնե՛ր, կանգնեք լռիվ,
Արևն յեկավ ձեր դեմ կռիվ,
Պիոներներ, դեպի վերև,
Շողերիս հետ դեպի արև։
Դուք էլ, դուք էլ մի-մի արեգ,
Դուք էլ ինձ հետ կռիվ արեք,
Վոր չթողնենք վոչ մի բացիլ,
Տեղից հանենք արմատ ու ծիլ։
ԲՈԼՈՐԸ—Դեհ, ա՛ն առաջ, ուռա՜ ուռա՜,
Մենք ու արև ֆիզկուլտուրա.
Բացիլները շատ են, անթիվ
Մենք նրանց դեմ կռիվ խռիվ,
Նրանց մի լավ ջարդենք, բրդենք,
Վոր իմանան տղամարդ ենք։
Մեզ ճանաչենք, առողջ մնանք,
Թե թույլ յեկանք, առողջ գնանք։










*ԲԱՑԻԼՆԵՐԸ (Գլխակոր)*

*Կորանք, կորանք ու կորսվանք,*
* Եսպես անհույս մենք ուր գնանք.*
*Մեր հայրերը կորան մեռան,*
*Վորսեց մահ գանք, նրանք թռան։*
*Ֆիզկուլտուրան ուժ է լրիվ,*
*Ի՞նչպես դուրս գանք դեմը կռիվ,*
*Պիտի անի մեզ ջարդ ու փուրդ,*
*Պիտի գցի մորթի ու բուրդ։*

*ԹՈՔՈՒԽՏԸ (Կանգնած է վճռական)*

*—Մեր դիրքերը վոչ, չենք տա մենք,*
*Մինչև վերջը կռիվ կանենք։*

*ԲՈԼՈՐԸ*

*—Մենք չենք վախում կռվից, վեճից,*
*Մենք ամուր ենք պինդ արճիճից։*

*ՃԱՌԱԳԱՅԹԸ (Վառելով գլխին եյերտրոլամպը յեվ ուղղելով դեպի բացիլները)*

*Յեթե առաջ գաք. բացիլ ժողովուրդ,*

*ԲՈԼՈՐԸ*

*—Անպատճառ կանենք մենք քեզ ջարդ ու փուրդ։*

*(Բացիլները հավաքվում են, կազմելով մի անձեվ մասսա)*
*(Լույս յեվ մնացած պատկեր).*

*ՃԱՌԱԳԱՅԹԸ*

*Չենք յերգի նրանց վրա թաղման յերգ,*
*Լավ է առաջուց տղերանց հայտնենք։*

*ԲՈԼՈՐԸ*

*Վոչ թե ուլերին, այլև եծերին*
*Հայտնենք ջոչերին, նրանց մեծերին։*

*ՈԴԸ*

*Հեյ, հայրեր, հիշեք։*

*ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱ*

*Օրենք է, օրենք՝*
*Առողջությունը աչքի պես պահենք։*
*Վախեք ու փախեք ցեխից ու կեղտից,*
*Եդ ընից, տնից չար բացիլներին։*

*ԲՈԼՈՐԸ*

*Խոնավությունից, փոշուց ու վոջլից,*
*Հիվանդություններ տարածողներին։*

*ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱ*

*Տանը. դաշտում, դազգյահի մոտ,*

*ՋՈՒՐԸ*

*Առավոտից մինչ առավոտ։*

*ՃԱՌԱԳԱՅԹԸ*

*Մայր ու աղջիկ կազմ ու պատրաստ,*
*Բացիլներից յեղեք ըզգաստ։*
*ԲՈԼՈՐԸ Պետքե, պետք է լինենք զգաստ,*
*Ու կյանքի մեջ դնենք խմաստ.*
*Ցավերի դեմ կռիվ. կռիվ,*
*Բացիլներին տանք ցաք ցրիվ,*
*Սարեր, ձորեր կարմիր կանաչ,*
*Մեզ հետ օդ ջուր. արև, ճաճանչ.*
*Կանչենք նրանց մեզ ոգնության,*
*Մենք թշնամի հիվանդության։*
*Կանցնի ձմեռ. կգա գարուն.*
*Կըլսվի մեր յերգը սիրուն.*
*Թե թշնամի, թե բարեկամ*
*Մեր մեծ գործը լավ կիմանան։*

**ՎԱՐԱԳՈՒՅՐ**




## ՄԻՇՏ-ՊԱՏՐԱՍՏ

*(Խմբական արտասանություն)*

**Մեկը.** —*Պիոներներ Միշտ պատրա՛ստ.*
**Խումբ.** —*Միշտ, պատրաստ ենք.*
**Մեկը.** —*Միշտ ուրախ, յեռանդով*
*Կերտեցե՛ք նոր աշխարհն անվեհեր,*
*Վառեցեք չմարվող ալ ջահեր,*
*Զուլեցեք սրտեր ձեզ, հարազատ,*
*Արգելքներ ու վիհեր չեն կարող*
*Ձեզ ընկճել,*
*Յեվ վոչ էլ զոռ մարտի սարսափներ.*
*Հզոր կիմ ունեք դուք ձեր առաջ.*
*Քայլեցեք միշտ առաջ, միշտ առաջ։*
**Խումբ.** —*Միշտ առաջ, միշտ առաջ։*
**Մեկը.** —*Լենինը ձեզ տվեց*
*Բյուրավոր պատգամներ,*
*Ամեն մի պատգամը մի փարոս ձեզ համար.*
*Վառեցեք, ձուլեցեք սրտերը ձեր իրար,*
*Պիոներներ, միշտ պատրա՛ստ դուք յեղեք.*
**Խումբ.** —*Մի՛շտ պատրաստ յենք։* **Ա. Վաճենց**

## ՊԻՈՆԵՐԻ ՅԵՐԳԸ

*Մենք պիոներներ ենք անհաղթ, համարձակ,*
*Նորածին կյանքի քաջ վորմնադիրներ.*
*Վորքան էլ լինի վորոտ ու կայծակ,*
*Նոր չենք կշինենք հաղթ ու անվեհեր։*

*Նորա գագաթին միշտ վառ կմնա*
*Մեր ջահը անշեջ փարոսի նման,*
*Յեվ ինչպես ծովում, նա միշտ ցույց կտա*
*Մեր նոր, լուսավոր. համարձակ ճամբան։*

*«Պատրաստ ենք, պատրաստ» մենք միշտ կգոչենք,*
*Հուժկու ձայներով կոչը կենդանի,*
*Մինչեվ ալ դրոշը մեր արյան գնով*
*Ամբողջ աշխարհում անվերջ ծածանի։*

Պիոներ՝ **Ս. Վախուճի**

ԱՐԱՔՍ

# ՊԻՈՆԵՐ ՌԵՎԻՆ



## ՌԵՎԻՆ ՓՈՂՈՑՈՒՄ

*Ահա պիոներ Ռևին քայլում է հաստատ ու համարձակ։*

*Բաց սրունքներն ածուխի պես սևացել են. վոտքերին սանդալներ ունի։ Նրա կարմիր փողկապը ֆռֆռ֊ռում է քամուց. անցնում է փողո֊ցով, վոնց վոր կենդանի դրոշակ։ Պա֊տանու աչքերը ծիծաղում են, թուխ դեմքին բիբերը սվլում են պիոներա֊կան դրոշի պես։*

*Անհանգիստ Ռևին հայացքը շրր֊ջում է այս ու այն կողմը, պատերին կարդում հայտարարութ‌յուն՝*

*— Այսոր կինոյում...*

*Ռևին գլխարկն ուղղելով առաջ գնաց։ Մին էլ մրգավաճառի խանու֊թից ծիկ արին տանձն ու խնձորը։*

*— Պիկ... ծիկ... պիո... ներ։*

*Հանդիպեց մի կոմսոմոլիստ.*

*— Բարե՛վ պիոներ — կանչեց նա։*

*Ռևին իսկույն ձեռքը դրոշակի պես պահեց։*

*Փողոցի անկյունից աղաղակի ու հայհոյանքի ձայներ եյին լսվում։ Ռևին ցած վազեց։ Յերկու փոք֊րիկ անապաստաններ թավալվում եյին փոշում, իրար ոծիքից քաշքշելով։*

*Հերոսի նման Ռևին յերկու կռվողներին բաժա֊նեց. նրանցից մեկը շատ փոքր եր, հազիվ 7—8 տա֊րեկան. նա արցունքոտ աչքերը սրբում եր կեղտոտ ձեռքերով. իսկ մյուսը խեթ-խեթ նայում եր Ռևուն։ Մին էլ լեզուն հանեց ու ճչալով փախավ։*

*— Պատկոմ, պատկոմ, սևերես .. պատ...*

*Ռևին կանգնած ծիծաղում եր։*

## ՀԱՎԱՔՈՒՅԹԻ

*— Տու տուտո՛ւ, տու-տու-տու-տու — հնչում եր փողը։ Պիոներները հավաքվում եյին հավաքույթի։ Ռևին վազելով ընկավ բակը։*

*Մարլենը սուլում եր ու կրունկի վրա պտտվում։ Ակոպյաբբինյան յերգում եր, — լա լա, լա-լալա՛։ Ռևին ծիծաղելով բռնեց Մարլենի կոկորդը.*

*— Ե՛յ հերոս, կամաց, — նկատեց Մարլենը։*

*— Ահ, հա՛ հա՛ հա՛, ցավում է է՛, հրճռում եր Ռևին ու ցատկոտում։*

*— Ե՛յ հե՛յ պիոներ, այծ, այծ, — մյուս կողմից բացականչեց Ակոպյաբբինյան։ Ռևին հրճռալով սկսեց յերգել.*

*— Ճիկ, ճիկ, ճիկ, մեր Ակոպյաբբինյան ծիտիկ ճիկ։*

*— Ո՞ւր չար պիոներ. անհանգիստ Ռևի — դժգո֊հեց Ակոպյաբբինյան։*

*— Եյ, Ռևի, փողկապս, — բղա֊վում եր Նինելը, վորի փողկապը Ռե֊վին թռցրեց։*

*— Ուհ, դրոշակ, դրոշակ — վա֊զում եր ու կանչում Ռևին։ Պիոներ֊ները ծիծաղում եյին։*

*— Տու, տու-տու տու, տու-տո՛ւ. պիոներները շարք-շարք կանգնեցին։ Մարզանքն սկսվեց։ Քրտնամած Ռե֊վին կարգնեց իր շարքում։*

*Ոզակավարն սկսեց հաշվել — մեկ, յերկու, յերեք չորս. մեկ, յերկու, յե֊րեք, չորս։ Ռևին արագ եր շարժում֊ները կատարում։ Ամեն անգամ ոզա֊կավարը նկատողություն եր անում — Ռևի դանդա՛ղ, առաջ մի՛ ընկնի։ Ռե֊վիի աչքերը կենսալի փայլով շողշո֊ղում եյին, իսկ ձեռքերը յերկաթի պես թափ զցվում։*

*— Մեկ, յերկու, յերեք, չորս. մեկ, յերկու, յերեք, չորս... Մարզվում եյին պիոներները, աշխուժով շարժում իրենց մկանները։*

## ՌԵՎԻՆ ՏԱՆԸ

*Ռևիի մայրը դերձակուհի յեր. հայրը վաղուց եր մեռել։ Ապրում եյին խոնավ ներքնահարկում։*

*Ռևին լուրջ նստել եր սեղանի առաջ։ Նրա շուր֊ջը նստոտել եյին փոքրիկ քույրերը՝ Սուսիկը, Սոնան ու Աշխենը։ Ամեն մեկի առաջ դրված եր մի թերթ թուղթ. գլուխները կախ գրում եյին։*

*— Սու-սի-կը... — շշնջում եր 8 տարեկան քույ֊րը յեվ շուտ-շուտ գրիչը թանաքոտում։*

*— Սուսիկ, եդ ինչքան շատ ես գրիչդ թաթա֊խում — նկատում եր Ռևին, ուշադրությամբ հետևե֊լով նրա գրերին։*

*— Լե-նին, ահա վերջացրի — բացականչեց Աշ֊խենը։*

*— Դեհ, հիմա սկսիր այ ես տողերն արտագրել «աշխատանքը լավ բան է» — ցույց տվեց Ռևին։*

*— Վայ, վայ, վայ, թանաքը թափվեց... բղա֊վեց Սուսիկն արցունքոտ աչքերը տրորելով։*

*— Դեհ, լավ Սուսիկ, նորից կգրես, ինչ ես մտա֊ծում — սիրտ եյին տալիս Ռևին ու քույրերը։*

*Սուսիկը խռովկան դեմքով սկսեց նորից գրել։*

*Ներս մտավ համակրելի դեմքով, մոտ յերեսուն տարեկան մի կին։ Աչքերի տակ խոր խորշեր կային. նա շատ գունատ եր։ Ձեռքի կապոցը դրեց աթոռի վրա ու հոգնած նստեց յերեխաների կողքին։ Ռևին ու քույրերը գլուխները բարձրացրել, ժպտում եյին, միայն Սուսիկն եր տխուր, չեր ժպտում։*



— Մայրի՛կ, մայրիկ ջան, ինչքան ժամանակ է մենք պարապում ենք…

— Ապրե՛ս պիոներ, իմ լավ Բեվի՝ այդպես քույրերիդ գիր սովորեցրու, դաստիարակիր։

Բեվին համեստությունից գլուխը կախեց։

— Սուսիկ ջան, եղ ինչո՞ւ ես մռայլվել—հարցրեց մայրը, գրկելով Սուսիկի փոքրիկ գլուխը։

— Մայրիկ, թանաքը թափեց ու իր գրածներն ամբողջովին կեղտոտեց—վրա բերին քույրերը, իսկ Սուսիկը նորից լացակումեց։

— Ոչինչ, Սուսիկ ջան, մի անգամ թանաք կըթափես, մյուս անգամ մաքուր կգրես ու այդպիսով կսովորես Բեվիի պես գրել։

Բեվին տեղից վեր կացավ, մեջքը ծգեց, ձեռքերը բարձրացրեց։

— Եհ, բավական է, հոգնեցինք. դեհ, Աշխեն, Սոնիկ, Սուսիկ, հավաքեք թղթերը։—Ցեվ սկսեց իր չարաճճի խաղերը։

— Մայրի՛կ, մայրի՛կ, քեզ էլ պիտի գրագիտություն սովորեցնեմ ո՜ւ ո՜ւ—ընկել էր մոր ուսերին ու սուլում էր։

— Է, Սուսիկ-փուսիկ, լալկան փիսիկ, արի փողկապս քո վզին կապեմ։ Բեվին քաշքշեց Սուսիկի ձեռքերից. մայրն ու քույրերը ծիծաղում էին։

— Հե, հե, հե, ինչպես է սազում Սուսիկին պիոներական փողկապը—բղավում էր Բեվին։

— Աշխեն, Սոնա, յեկեք բայլենք Սուսիկի հետեվից, նա մեր առաջնորդ դրոշակակիրը թող լինի։

Սենյակի մեջ շարքով քայլում էին նրանք։ Սուսիկի տխրությունն անցել էր, հպարտ հպարտ գցում էր փոքրիկ ոտքերը։

— Մեկ, յերկու, յերեք… հաշվում էր Բեվին։

Մայրը յերջանիկ ժպիտով նայում էր յերեխաներին.

— Պիոներ, իմ չարաճճի Բեվի։

## ՄԻ ՉԱՐ ԿԱՏԱԿԻ ՀԱՄԱՐ

Պիոներական ակումբում աղմուկ էր, հարայ։

— Բեվի, հերոս հա, հա, հա—հռհռում էին իրար դիպչելով, իսկ հերոս Բեվին մի չաղլիկ կատվի պոչից բռնած, պտտեցնում էր պիոներների մեջ։

— Առ քեզ Ակտյաբրինա, Նինել, հե—բղավում էր նա ու կատուն խփում ընկերներին։

— Եյի Բեվին, չար Բեվին։ Ամեն կողմից կանչում էին պիոներներն ու դուրս թռչում։

Հանկարծ ներս մտավ պիոներական հրահանգիչը ու ապշած կանգնեց։

— Եյ հերոս, խայտառակ Բեվի, ես ինչ ցիրկ ես սարքել…

Բեվին վախեցած բաց թողեց կատվի պոչը։ Շըշմած կատուն ցատկեց հրահանգչի վրա յեվ նրա յերեսն ու ձեռքերը ճանկռոտեց։ Հրահանգիչը սաստիկ վրդովված բղավեց Բեվիի վրա։

— Անդաստիարակ, անկարգապահ պիոներ, քեզ պատիժ— այսոր իրավունք չունես կոլլեկտիվի հավաքույթին մասնակցելու։

Բեվին ամոթահար կախել էր գլուխը յեվ դեմքը մռայլել։

Պիոներները վազվզում էին նրա շուրջն ու կանչում.

— Մի մտածի Բեվի, մեր հերոս պիոներ։

Բեվին մի անկյուն քաշված՝ ոչ ոքի հետ չէր խոսում. ինքն իրեն սաստիկ նախատում էր։

— Ամոթ ինձ, ամոթ, ինչպիսի նկատողություն ստացա։ Ակտյաբրինան չարամտորեն ծիծաղում էր։

— Ահ, ահ, ինչ լավ յեղավ…

Բեվին սեղմել էր ատամները։ Բոլորը գնացին կոլլեկտիվի հավաքույթին, մենակ Բեվին տխուր գընաց տուն։ Նա մտքում կրկնում էր շարունակ. «ինչ արիր Բեվի, ամո՛թ քեզ պիոներ»։ Մայթերն ասես փախչում էին նրա ոտքերի տակից, շուրջը ոչինչ չէր տեսնում։



*Ռեմիի մայրը մեքենայի առջև նստած կար եր անում, իսկ քույրերը խաղում եյին։ Ռեմին ներս մըտավ թույլ-թույլ ու գլխիկոր։ Առաջին անգամն եր, որ նրա աչքերը չեյին փայլում ժպիտով։*

*— Հը, Ռեմիկ, ինչ ե պատահել—գլուխը բարձրացրեց մայրն ու զարմացած նայեց նրա աչքերին.*

*— Մայրիկ, այսոր ինձ հետ մի խոսեք...*

*Քույրերը թախծոտ աչքերով նայում եյին Ռեմիին։ Նա քաշվեց մի անկյուն, վերցնելով Լենինի կենսագրությունը լավ սկսեց մտքում կարդալ։ Թերթում եր ջղաձգորեն գրքի յերեսները, կարդում եր, մեկ էլ յերբ միտն եր ընկնում որվա դեպքը շշնջում եր. «ամոթ քեզ, Ռեմի, անկարգապահ պիոներ»։*

*Գրքույկի յերեսին նկարված եր Լենինը. նայեց նրա խորատեսված հայացքին ու բարձր կանչեց.*

*— Ինչպես եմ ամաչում մեր մեծ ուսուցիչ Լենինից, նա նույնպես նախատում ե ինձ։*

*Մայրն ու քույրերը շրջվեցին դեպի Ռեմին։*

*— Ի՞նչ ես քեզ ու քեզ խոսում Ռեմի--խոսեց մայրը։*

*— Ախր մայրիկ, դե ինձ հանգիստ թողեք...*

*Մայրը գլուխը կախ շարունակեց կարի մեքենան չխչխկացնել, իսկ քույրերը տխուր փսփսում եյին։*

*«Չե, սրանից հետո կտեսնեն, թե Ռեմին ինչպես ե», մտածում եր Ռեմին ու մտքում ծրագրում իր անելիքները։*

## ՈՐԻՆԱԿԵԼԻ ԳՈՐԾ

*Պիոներ Նինելն իրիկնապահին գնաց Ռեմիի մոտ։ Ռեմին գրագիտություն եր սովորեցնում յերեք բատրակների՝ Սեթոյին, Գեվոյին ու Անուշին։ Ցերեկն ել ուշադիր լսում եյին իրենց պատանի ուսուցչին։*

*Նինելն այդ պատկերի առաջ զգացված մի քանի վարկյան լուռ եր։*

*— Եհ, Ռեմի, ուսուցիչ Ռեմի—խոսեց ընկերը։*

*Բատրակները գլուխները բարձրացրած նայում եյին նոր հյուրին։ Ռեմին ուրախացավ, տեսնելով ընկերոջը։*

*— Պարապում եմ մեր հարեվան բատրակ յերիտասարդների հետ։ Բատրակ Սեթոն դարձավ Նինելին.*

*— Ես հնգեր պիոներն ամեն որ մեզ գիր ա սովորեցնում... Ռեմին մինչև ականջները կարմրեց։*

*— Կեցցես Ռեմի, հերոս Ռեմի։*

*Բատրակներն ուրախադեմ բաժանվեցին իրենց ուսուցչից։ Ռեմին ու Նինելը շտապով գնացին պիոներական հավաքույթին։ Հավաքույթի վերջում Նինելը ձայն խնդրեց ու պատմեց Ռեմիի կատարած գործը Պիոներները խանդավառությամբ ծափահարում եյին։*

*— Հեյ, մեր լավ Ռեմի...*

*— Ռեմի, հերոս, կարգապահ ու որինակելի պիոներ—մեղմորեն արտասանեց հրահանգիչը։*

*Ռեմին ուրախ եր, ժողովից հետո վազվզում եր ընկերների հետ, սակայն յերբեք չեր մոռանում ինքն իրեն ու խուսափում եր չար կատակներից։*

*Տանը մորը յեվ քույրերին պատմեց իր առաջին նկատողության մասին։*

*Քույրերն աչքները լայն բացած լսում եյին Ռեմիի հետաքրքիր պատմությունը։ Բոլորն ուրախ-ուրախ ծիծաղում եյին, մայրը կրկնում եր.*

*— Ախ, Ռեմի, իմ խելացի պիոներ...*



# ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿ

Խոսք՝ Գ. ՄԱՀԱՐԻ

Երաժշտություն՝ Դ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿ

**Գուրգեն Մահարի**

Նոր ծլած, ծաղկած իմ Հոկտեմբերիկ,
Մեր լեն օրերի դու կարմիր ծաղիկ,
Գիշերը անցավ, արեվ ե հիմա,
Մեր սավետական աշխարհի վրա։

Զարթիր իմ անուշ, իմ Հոկտեմբերիկ,
Մեր լավ օրերի դու կարմիր ծաղիկ։

Քո հայրը ընկավ դաժան պայքարում,
Վոր դու բացվեյիր վորպես նոր Գարուն.
Քո հայրը յեղավ գիրքերում համառ,
Վոր մի նոր արեվ բացվեր քեզ համար։

Զարթիր իմ անուշ, իմ Հոկտեմբերիկ,
Մեր լավ օրերի դու կարմիր ծաղիկ։

Ինչ կա աշխարհում լավ ու գեղեցիկ,
Քեզ համար լինի, քեզ համար բացվի.
Որե՛ր արեվոտ ու վարդե՛ր, վարդե՛ր,
Զարթիր իմ անուշ, Գարուն ե արդեն։

Անուշ, իմ անուշ, իմ Հոկտեմբերիկ,
Մեր լավ օրերի դու կարմիր ծաղիկ։

## ՈՒՍՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ս. Խոզրիկո (պիոներ)**

Թանձր անտառի աղմկահույզ խորքից,
Լազերից մեր պիոներական,
Յետ յեկանք շարքերով յեռուն ու խրոխտ,
Շտապով դպրոց մենք յեկանք։

Անտառը դեղնում ե, թռշնում են տերեվներ,
Գիտության տենչն ե մեր կրծքում թակում,
Հրավերի կանչը վորոտում ե ահա,
Ինչը սովորելու յե կանչում։

Հրաժեշտ ու փայլուն արեվի ներքո,
Լցրել ենք մեր ուժերը կրակով,
Յեվ մեր մեծ ղեկավարի հետեվից մենք ահա
Առա՛ջ ենք քայլում անխոնջ։

Հաճելի յե իհարկե, յերգերով զբաղվել,
Պահմտոցիկ խաղալ արեվի հետ,
Բայց գիտե՛նք, ժամանակ ե մեզ սովորելու,
Կատարելու ավանդը մեծ։

**Թարգմ. Մ. Արմեն**

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՏԱՐԱԾՎԱԾ Ե ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Քանի գնում, մեր յեղբայրներն ամբողջ աշխարհում ուժեղանում են, աճում, զարգանում։ Նրանք ավելի յեն մտահոգություն պատճառում բուրժուաներին, վորոնք մտածում են գտնել միջոցներ, վորոնցով կարելի յե խեղդել պիոներական շարժումն ամբողջ աշխարհում։

Սակայն այդ՝ յերբեք չի հաջողվի բուրժուաներին։ Պիոներական շարժումը չի կարելի վոչնչացնել, վորովհետև նա ամբողջ բանվորական շարժման մի մասն է կազմում, վորովհետև նա համաշխարհային շարժում է՝ տարածված ամբողջ աշխարհում։

Քանի գնում, աշխատավորները բոլոր յերկրներում կազմակերպվում ու համախմբվում են կոմկուսի շուրջը, իրենց շահագործողների գլխին վերջին հարվածն իջեցնելու՝ նրանց իշխանության վերջ տալու համար։



Կոնֆերենցիայի պատգամավորների մի խումբ

Յեվ եդ գործում պիոներները մեծ օգնություն են ցույց տալիս աշխատավորությանը, կոմյերիտմիությանը և կոմմունիստական կուսակցությանը։

Պիոներները պայքարում են դպրոցում, մասնակցում են հասակավորների հետ միտինգներին, ցույցերին ու գործադուլներին, տարածում են կոմմունիստական գրականություն ու թերթեր։ Այս աշխատանքով պիոներները պատրաստվում են հասակավոր ու հոգնած հեղափոխականներին փոխարինելու, նրանց պայքարը շարունակելու համար։

## ԻՆՉԻ ԳՈՒՄԱՐՎԵՑ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆ

Յեվ ահա այս աշխատանքն ավելի լավ կազմակերպելու, իմանալու համար, թե պիոներներն ինչ են արել և ինչ են անելու ամբողջ աշխարհում, սեպտեմբերի վերջերին, Մոսկվայում գումարվել էր պատանեկական կոմունիստական խմբերի կոնֆերենցիան։

## ՆՎԱՃԵՆՔ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅԱՆԸ

Ամենից առաջ կոնֆերենցիան պարզեց, վոր թեև պիոներական շարժումն ուժեղացել է բոլոր յերկրներում, բայց նա դեռ չի կարողացել իր շարքերը գրավել բանվորների բոլոր յերեխաներին։ Բացի դրանից ուշադրություն չի դարձված յեղել գյուղական պատանեկության վրա։ Այս խնդրում կոնֆերենցիան վորոշել է ամեն կերպ աշխատել գրավելու բանվոր և գյուղացի պատանեկության իր շարքերը։ Պիոներական կազմակերպությունը չը պետք է առանձնանա անկազմակերպ պատանիներից ու նրանց կյանքից։ Նա պիտի մանի նրանց մեջ, տարածի իր ազդեցությունը նրանց վրա, այդպիսով պայմաններ ստեղծի կազմակերպության ուժեղացման ու աճման համար։

## ՊԱՅՔԱՐԸ ԴՊՐՈՑՈՒՄ

Մյուս գլխավոր խնդիրը, վորով զբաղվեց կոնֆերենցիան՝ դա պայքարն է դպրոցում։ Ինչպես գիտեք, ՍԽՀՄ սահմաններից են կողմ, դպրոցը բուրժուաների ձեռքին է գտնվում։ Նրանք դպրոցի միջոցով աշխատավորների յերեխաներից դաստիարակում են մեկ-մեկ ստրուկներ, վորոնց կարելի լինի, մեծանալուց հետո՝ ավելի լավ ճնշել ու շահագործել։ Յեվ ահա պիոներական խմբերը բուրժուական յերկրներում կռվում են բուրժուական դպրոցի դեմ։ Նրանք պահանջում են, վոր կրոնի և թագավորական պատմությունների դասավանդումը վերանա դպրոցներից։ Նրանք պահանջում են, վոր գործադուլ բանվորների յերեխաներին կերա-

կուր սովի, դպրոցից ծեծը վերանա և այլն: Յեվ ահա կոնֆերենցիան գտավ, վոր պիոներների դաստիարակության ամենալավ միջոցներից մեկը ՍԽՀՄ սահմաններից դուրս, դա դպրոցական պայքարն ե: Դրա համար կոնֆերենցիան վորոշում ե ամեն կերպ ուժեղացնել դպրոցական պիոներական բջիջները:

## ՊԱՅՔԱՐ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅԱՆ ՇԱՀԱԳՈՐԾՄԱՆ ԴԵՄ

Կապիտալիստների յերկիրներում վոչ միայն շահագործում են հասակավոր բանվորներին և նրանց կանանց աշխատանքն, այլև մեծ չափով տարածված ե յերեխաների ու պատանիների շահագործումը: Հարյուր-հազարավոր բանվոր յերեխաներ կան, վոր աշխատելով գործարանի ծըխի ու փոշու մեջ, անտանելի պայմաններում, փչացնում են իրենց կյանքը, ապրուստի համար չնչին վարձատրություն ստանալով: Յեվ ահա կոնֆերենցիան գտնում ե, վոր ամեն կերպ պետք ե աշխատել, վոր պիոներները պայքարեն յերեխաների աշխատանքի շահագործման դեմ, թույլ չտալով 14-ից պակաս տարիք ունեցող պատանիներին աշխատել գործարաններում կամ հողատերերի կալվածներում:

## ՀԱՐԿԱՎՈՐ Ե ՈՒԺԵՂ ԿՈՄՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ

Վորպեսզի ավելի լավ աշխատեն պիոներական խմբերը, կոնֆերենցիան գտնում ե, վոր կոմմունիստական կուսակցությունները և մասնավորապես կոմյերիտական կազմակերպությունները մեծ ուշադրություն պիտի դարձնեն նրանց աշխատանքների վրա: Պետք ե ավելի ուժեղացնել նրանց ղեկավարությունը, վորովհետև կոմմունիստական ճիշտ ղեկավարությունից ե կախված պատանեկական կոմմունիստական (պիոներների) խմբերի հաջողությունները, նրանց նորանոր նվաճումները: Յեվ դրա համար մեծ ուշադրություն պետք ե դարձնել ղեկավարների



Ընկ. Բուխարին

վրա, առաջ քաշելով բանվորական ծագում ունեցող կոմմունիստ և կոմյերիտական ղեկավարներ:

## ԱՄՈՒՐ ԿԱՊ ՍԽՀՄ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՀԵՏ

ՍԽՀՄ-ն մեջ ե միայն, վոր պիոներական կազմակերպությունն ազատ, առանց հալածանքի աշխատում ե: Յեվ դրա համար նա աշխարհիս ամենամեծ և ամենաուժեղ կազմակերպությունն ե: Բոլոր յերկիրների պիոներական կազմակերպությունները պետք ե միշտ ծանոթ լինեն ՍԽՀՄ պիոներների աշխատանքի ու կյանքի հետ, որինակ վերցնեն նրանցից՝ իրենց դըժվարին աշխատանքը կազմակերպելու և առաջ տանելու համար: Դրա համար կոնֆերենցիան գտնում ե, վոր պետք ե խոշոր ուշադրություն դարձնել կապի վրա: ՍԽՀՄ պիոներական կազմակերպությունները պետք ե ավելի ուժեղ կերպով կապվեն բուրժուական յերկրներում աշխատող պատանեկական կոմմունիստական խմբերի հետ:

Ահա այն գլխավոր խնդիրները, վորոնց վրա կանգ առավ և իր վորոշումները տվեց պատանեկական կոմմունիստական խմբերի միջազգային կոնֆերենցիան:

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԼԾԻ ՏԱԿ ՀՅՈՒԾՎԱԾ ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ՊԱՅՔԱՐԻՆ ՈԳՆԵԼՈՒ՝ ՊԻՈՆԵՐ,

ՊԱՏՐԱՍՏ

# ԻՆՁ ՊԱՏՄԵՑԻՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՅԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԸ

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԽԱՂԵՐԸ

Մեր պիոներները խաղում են Կարմիր Բանակ, Ռեյխստագ (գերմանական պարլամենտ), արտասահմանից գաղտնի գրականություն տեղափոխելը և այլն: Պետք է այնպես անել, որ գրականությունը տեղափոխելիս չնկատեն վոստիկանները: Յեվ ահա մի քանի պիոներներ խաղում են գերմանական սահմանապահ վոստիկանների դերը, իսկ մյուսները՝ կոմունիստների: Կոմունիստներն ստանում են կոչեր, թերթիկներ, գրքույկներ ու պահում կոշիկների կամ հագուստների աստառների մեջ: Վոստիկանները շատ ուշադիր են և չեն կարող մտածել, որ կոշիկների մեջ գրականություն է պահ-



Էյզան Հանս



Գերմ. պիոներ Կ. Բեյզոլտ և ֆրանս. պիոներ Պոուլյա

ված: «Ռեյխստագ» խաղալիս պետք է պաշտպանել կոմունիստ պատգամավորներին, վորին ռեյխստագը պատրաստվում է հանձնելու վոստիկաններին:

Գերմ. պիոներ՝ **Կուրտ Բեյզոլց**

## ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԴԱՆԻԱՅՈՒՄ

**(Դանիացի պիոների հիշողություններից)**

Մի անգամ դպրոցում տոնում եյին ազգային դրոշակի տոնը: Այն ժամանակ, յերբ ուրիշ յերեխաներ ծունկ եյին չոքել ազգային դրոշակի առաջ, մենք՝ պատանի պիոներներս հավաքվել եյինք կարմիր դրոշներով դպրոցի բակում և յերգում եյինք «Ինտերնացիոնալը»:

Հետո մենք տարածեցինք մի քանի թերթիկներ. «Ինչ գիտեմ դանիական ազգային դրոշակի մասին» վերնագրով: Ուսուցիչները շատ զայրացան մեզ վրա, վարչությունը կանչեց վոստիկաններին, վորոնք սկսեցին մեզ ծեծել ռետինե ձողերով:

Ուսուցիչները կարգադրեցին, վորպեսզի տղաները պատառոտեն թերթիկները, վորը և կատարվեց տղաների (աշակերտների) մեծամասնության կողմից, բայց իրարանցման ժամանակ պատառոտեցին նույնպես դանիական ազգային դրոշակը:

Հետևյալ որը բոլոր բուրժուական լրագրերը գրում եյին, վոր վերջապես վոստիկանները լավ խրատեցին պիոներներին: Բայց կարծում եմ, վոր մեր թշնամիները նույնքան վատ կրեցին, ինչքան և մենք:

Մեր յերկրում կան նույնպես հրեական դպրոցներ: Այդ դպրոցների ուսուցիչներն աշխատում են դաստիարակել յերեխաներին ազգային վոգով և տանում են խոշոր աշխատանք պիոներների դեմ:

Մի անգամ հրեական մի դպրոցի առաջից անցնելով, բղավեցինք՝ «կեցցեն պատանի պիոներները»: Հետևյալ որը այն տանը, ուր մենք մեր ժողովներն եյինք ունենում, յեկան այդ դըպրոցի մի քանի **դասարանների աշակերտներ** և ուսուցիչների կարգադրությամբ բղավեցին «կորչեն կարմիր շապկավորները»: Իսկ յերբ տանտերն իմացավ, վոր մենք կոմունիստներ ենք, դուրս արավ մեզ իր բնակարանից:

Այս օրինակները ցույց են տալիս, թե ինչպես ենք կռվում մենք բուրժուաների դեմ.

Պիոներ՝ **Էյզան Հանս**

* * *

Դանիայում պատանեկական կոմունիստական խմբերը, պատանի պիոներները, կազմակերպվել են անցյալ տարի: Դանիայի մայրաքաղաք Կոպենհագենում 100 պիոներներ կան, վորոնք բաժանված են 3 խմբերի մեջ: Կազմակերպության գլուխն է կանգնած կենտրոնական կոմիտեն, վորն ընտրված է հենց պիոներների կողմից:

Յերբ սկսվի ուսումնական տարին,



Կոնֆերենցիայի պատգամ. ուսումնասիրում են Մոսկվայի պիոներների պատի լրագրները

դպրոցներում կազմակերպվելու յեն դպրոցական բջիջներ: Պիոներները դեռ անցյալ տարի պայքարում եյին դըպրոցում կրոնի և նման դասերի վերացման համար:

Յերբ կազմակերպվեց Դանիայի պիոներների առաջին ցույցը, միտինգի ժամանակ յեկան վոստիկանները, ձերբակալեցին մի ընկերոջ և միտինգի ցույցը ցրեցին: Միտինգի գլխավոր ճառախոսին, 10 տարեկան պիոներ Էյզան Հանսին (վորը յեկել եր Մոսկվա պատ. կոմ. խմբերի միջազգային կոնֆերենցիային), սկսեցին դպրոցում հալածել. տեսուչն սպառնում եր նըրան դուրս անել դպրոցից, յեթե նա շարունակի պիոներ լինել և նրան միշտ վատ թվանշաններ եյին դնում:

Պիոներները հաճախ իրենց հավաքույթները կատարում են անկազմակերպ պատանիների հետ միասին:



Պատգամավորներն իրենց տպավորություններն են գրում

## ՆՈՐՎԵԳԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Ներկայումս Նորվեգիայի պիոներական կազմակերպությունը վերակազմըվում է վորպես մարտական մի կազմակերպություն:

Առաջ պատ. կոմ. խմբերը գրավվում եյին միայն խաղերով, ընթերցանությամբ և ներկայացումներ տալով: Հիմա նրանք վերակառուցվում են ըստ դպրոցական բջիջների:

Միայն Նորվեգիայի մայրաքաղաք՝ Օսլո քաղաքում կազմակերպված են 18 դպրոցական բջիջներ (իսկ Օսլոյում 22 դպրոց կա միայն):

Դպրոցական բջիջները հավաքվում են շաբաթը մեկ անգամ, քննում են դպրոցական վողջ կյանքը, կռվում են դպրոցական բացերի դեմ: Նրանց օգնում են դպրոցներին կից ծնողական խորհուրդները:

Բուրժուական ուսուցիչները վախենում են բջիջներից և վոչինչ նրանց դեմ չեն ձեռնարկում: Բայց բջիջային ժողովներից, հերթով մեր բնակարաններում գումարում ենք խմբերի հավաքույթներ: Նորվեգիայում ունենք 15 խմբեր՝ 3,000 պիոներներով:

Նորվեգիայում շատ պատանիներ աշխատում են կոնսերվի գործարաններում և ձկնարաններում, վորպես բանվորներ: Հիմա պատանի պիոներները Նորվեգիայում պայքարում են յերեխաների աշխատանքի շահագործման դեմ: Պրոֆմիությունների վերջին համագումարում պիոներ Նորդլին (պատ. կոմ. խմբերի միջազգ. կոնֆերենցիայի պատգամավոր) զեկուցում է կարդացել յերեխաների աշխատանքի մասին: Նա նույնպես պահանջել է, վոր պրոֆմիությունները պիոներների հետ միասին պայքարեն յերեխաների աշխատանքի շահագործման դեմ:

## ՇՎԵԴԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

1925 թ. մարտին գումարվեց պատանեկական կոմունիստական խմբերի կոնֆերենցիան: Կոնֆերենցիային ներկա եյին 7 խմբեր: Վորոշվեց վերակազմել «Բանվորների յերեխաների միությունը» և կազմակերպել դպրոցական բջիջներ: Մինչ այդ, մեր խմբերը թույլ եյին աշխատում:

Ստոկհոլմ քաղաքում կազմակերպված է 2 դպրոցական բջիջ:

Բուրժուական պատանեկական շատ կազմակերպություններում կոմունիստները խոշոր ազդեցություն ունեն և դրա շնորհիվ հաջողվել է նրանց ցրել այդ կազմակերպությունները և պատանիներին գրավել «Բանվորների յերեխաների միության» շարքերը»:

Շվեդիայում մեծ ծավալ է առել յերեխաների աշխատանքը: Պատանիները մինչև իսկ աշխատում են վտանգավոր արտադրությունների մեջ, օրինակ՝ լուցկու գործարանում: Շատ պատանիներ իրենց որն. այսպես են անցկացնում. առավոտյան ժամի 8-ից մինչև 1-ը դպրոցում, հետո ճաշում են և մինչև 7 անց կես աշխատում են գործարանում: Նրանց աշխատավարձը շատ չնչին է— 1 րուբլի 30 կոպ. շաբաթական

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Ֆրանսիական պիոներները ներկայումս արագորեն աճում են և սկսում ուժեղ աշխատել: Միայն Փարիզում կան 90 պիոներական խմբեր: Բուրժուական լրագրերը միշտ հարձակվում են պիոներների վրա: Ընկավել է պիոներների հալածանք, ձերբակալություններ, ծեծ և այլն: Պիոներներին հալածում են գլխավորապես նրա համար, վոր նրանք պայքարում են Մարոկկոյի պատերազմի դեմ:

Փարիզում կոչեր փակցնելու և պիոներական «Պատանի ընկեր» թերթը տարածելու համար ֆրանսիական վոստիկանությունը ձերբակալել եր մի քանի պիոներների: Այդ իմանալով, բանվորները և ձերբակալվածների ծնողները հավաքվում են վոստիկանատան առաջ և պահանջում, վոր պիոներներին ազատ արձակեն: Վոստիկաններն ստիպված են լինում կատարել բանվորների պահանջը:

## ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՎՈՂՋՈՒՅՆԸ

«Ֆրանսիական պիոներների պատգամավորությունը յերջանիկ է, վոր գտնըվում է ՍԽՀՄ-ում, միջազգային կոնֆերենցիայի շնորհիվ:

Պարզ է, վոր մենք դեռ շատ ենք աշխատելու, այն արդյունքներին հասնելու համար, վորին հասել եք դուք: Յուրացնելով ձեր փորձը կրկնակի համարձակությամբ ու վճռականությամբ կտանենք մեր աշխատանքը. ուշադրություն չդարձնելով վոստիկանների հալածանքներին՝ կհամախմբենք պատանիներին պիոներական դրոշի տակ: Մենք միշտ և ամենուրեք կկոչենք.

«Միշտ պատրաստ ենք».

Հիմա պատգամավորներն իրենց տեղերում են գտնվում: Նրանք արդեն սկսել են իրենց պայքարը: Դեռ ճանապարհին՝ անցնելով գերմանական սահմանը, գերմանական պատգամավորներն իրենց նամակում գրված Լենինգրադի պիոներներին, խոստանում են կրկնապատկած ուժերով աշխատել ու պայքարել:



Գերմանական պիոներների մարտական դրոշակը



պիոներական աշխատողների համահայաստանյան խորհրդակցությունը, կայացած հոկտեմբերի 21-25-ը

Հ. ԴԱՎԹՅԱՆ

# ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԴՊՐՈՑՈՒՄ

Դպրոցական պարապմունքներն արդեն ըսկըսվել են, սակայն շատ պիոներներ դեռ չգիտեն իրենց անելիքները դպրոցում։ Յերբեմն նըկատվում է, վոր պիոներները բոլորովին առանձնանում են վոչ պիոներ աշակերտներից, կազմակերպում են դպրոցում զանազան աշխատանքներ, վորոնց, մնացած աշակերտները, շատ քիչ են մասնակցում։

## ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Աշակերտական ինքնավարության նպատակն է՝ հենց աշակերտական նստարանից պատանեկությանը վարժեցնել հասարակական աշխատանքներին մասնակցելուն։ Ինքնավարության միջոցով պատանիները սովորում են կոլեկտիվ կերպով աշխատել, զարգացնել իրենց ինքնագործունեությունը։ Սակայն նկատված է, վոր պիոներներն ինքնավարության ամբողջ աշխատանքը վերցնում են իրենց ձեռքը և վոչ պիոներ աշակերտներին վոչինչ չի մնում անելու։

Այդպիսով մի կողմից պիոներները չափազանց ծանրաբեռնվում են, իսկ մյուս կողմից, վոչ-պիոներները կամաց կամաց պասսիվանում են և այլևս չեն հետաքրքրվում աշակերտական ինքնավարության աշխատանքներով։ Դպրոցում այս ձևով աշխատելուց պիոներները ձեռք պիտի քաշեն։ Պետք է այնպես անել, վոր բոլոր աշակերտներն ակտիվ կերպով մասնակցեն ինքնավարության աշխատանքներին։

## ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻՆ ՄԱՍՆԱԿԻՑ ԴԱՐՁՆԵՆՔ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ

Աշակերտները պետք է վոչ միայն ինքնավարության աշխատանքներին մասնակցեն, այլ պիոներների միջոցով անհրաժեշտ է նրանց կապել զանազան հասարակական կազմակերպությունների և հիմնարկների աշխատանքների հետ։ Աշակերտները կոմյերիտմիության բջիջի, բանվորների կոլեկտիվի, «Ավիոքիմի», «Մոպրի», «Կորչի անգրագիտություն» ընկերության աշ-

խատանքներին կարող են ակտիվ մասնակցել և օգտակար լինել. պետք է միայն նրանց կապել այդ կազմակերպությունների հետ։

Պիոներները գյուղի խրճիթ-ընթերցարանում պետք է կազմակերպեն բարձրաձայն ընթերցումներ և այդ աշխատանքներին մասնակից դարձնեն նաև վոչ պիոներ աշակերտներին։

ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆ ՏՈՆԱԿԱՏԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ՅԵՎ ԿԱՄՊԱՆԻԱՆԵՐԻՆ

Պիոներները հաճախ զանազան կամպանիաներ են անցկացնում. կազմակերպում են յերեկույթներ ու ցերեկույթներ։ Տոնակատարությունների ժամանակ տեղի յեն ունենում պիոներական յերթեր և զբոսանքներ, իսկ այդ բոլորին վոչ-պիոներ աշակերտները հեռվից նայում են միայն։ Ինչու՞ նրանց էլ մասնակից չանել այդ աշխատանքներին, նրանք էլ զգան իրենց ընդհանուր ընտանիքի անդամներ։

Պիոներները աշակերտների հետ միասին աշխատելով, նրանց կկապեն պիոներական կազմակերպության հետ և ավելի հեշտությամբ կտարածեն կոմունիստական ազդեցությունը նրանց վրա։

ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ

Պիոներ աշակերտները, վոչ-պիոներ աշակերտների հետ միասին պետք է դպրոցում զանազան աշխատանքների կազմակերպիչները հանդիսանան։

Դպրոցի համար փայտ կտրտելու, խաղերի հրապարակ պատրաստելու և նման ուրիշ աշխատանքների նախաձեռնողները պիոներները պիտի հանդիսանան։

Պիոներները փորպոստի միջոցով խոշոր մասնակցություն պիտի ունենան դպրոցական շինարարությանը։ Փորպոստն աշխորհրդի հետ միասին այնպես պիտի կազմակերպի դպրոցի ամբողջ աշխատանքը, վորպեսզի յեթե վոչ բոլոր աշակերտները, գոնե նրանց մեծ մասը կապված լինեն ու ակտիվ մասնակցեն այդ աշխատանքին։



պիոներների կազմակերպության գավկոմների նախագահները և կենտբյուրոյի մի խումբ անդամներ



Լ. Տրոցկի

## ԿԱՊԸ ՈՒՍՈՒՑՉԻ ՀԵՏ

Բայց պիտի շեշտել, որ այդ բոլոր աշխատանքների հաջողությունը խոշոր չափով կապված է նրանից, թե ուսուցիչն ինչ մասնակցություն է ցույց տալիս։ Ֆորպոստն ուսուցչի հետ պետք է սերտ կապ ստեղծի և իր նախաձեռնած աշխատանքները համաձայնեցնի ամբողջ դպրոցի գործունեյությանը։

## ՊԻՈՆԵՐՆ ՈՐԻՆԱԿԵԼԻ ԱՇԱԿԵՐՏ Է

Յերբեմն պիոներները կարծում են, որ իրենք պարտավոր են միայն աշխատել պիոներական, հասարակական, շինարարական կամ այլ աշխատանքների ասպարեզում։ Իսկ սովորելը — դա յերկրորդական բան է։

Անցյալ տարին ցույց տվեց մեզ այդ սխալի դառն հետևանքները։ Պիոներներից շատերն ուշադրություն չէին դարձել իրենց դասերի վրա և թույլ աշակերտներ էին եղել։ Պիոները պետք է հիշի, որ սովորելը նրա գլխավոր պարտականություններից մեկն է։ Պիոները պիտի լինի ոչ միայն ֆիզիքապես առողջ, այլ նաև մտավորապես զարգացած փոխարինող։

Կոմյերիտմիության յերրորդ համագումարում ընկ. Լենինն ասել է, որ կոմմունիստական նոր սերունդը պետք է սովորի և լավ սովորի։

Պիոներն իր դասերը պատրաստելու գործում նույնպես որինակելի պետք է լինի ոչ-պիոներների համար։

Պիոներներն այն ժամանակ դպրոցում հաջողություն կունենան, յերբ նրանք իրենց աշխատանքները կտանեն կազմակերպված կերպով, ֆորպոստի միջոցով և ամեն ամսում կազմելով դպրոցում կատարելիք աշխատանքի ծրագիրը։

Այժմ հարց է առաջ գալիս՝ չէ՞ որ գյուղում ֆորպոստներ չունենք, ինչպես պետք է կազմակերպել գյուղական դպրոցում պիոներական աշխատանքը։

Գյուղում ֆորպոստի բոլոր աշխատանքները տանում է պիոներական կոլլեկտիվը, դպրոցում անելով այն բոլորը, ինչ անում է քաղաքում ֆորպոստը։

Ս. ՊԱԼՑԵՎ

# ԽՓԻՐ ԹՄԲՈՒԿԻԴ ՊԻՈՆԵՐ

Դու գիտես, դու հիշում ես պիոներ, են որերը սարսափելի, սովի. . որերն ամպամած եյին. կռիվ, թալան, գաղթ...

Մսագործ Համոյի խանութի առաջ հավաքվել եյին 10–20 գաղթական։ Յեկել եյին ո՜վ գիտե, վորտեղից։ Համոն յեզ եր մորթել, մի լղար ու քոսոտ յեզ. հավաքվել եյին աղիք ու թոք տանելու։ Դեռ յեզը չմաշկած՝ խանութի, առաջ՝ հերթի եյին կանգնել, բայց ինչ հերթ. ով ուժեղ եր, առաջ եր ընկնում և մի կտոր աղիքի համար սկսվել եր աղմուկ, իրարանցում, ծեծ, հայհոյանք։

Եդպես եր Ալեքպոլն առավոտ, իրիկուն։

*
* *

Արևը մայր չմտած, մարդիկ տուն եյին մտնում շտապ. պատուհաններից լույս չեր յերևում. սոված շներն եյին վոռնում և կարծես խավարի դեմ կռվում։ Գիշերը յերկար եր, ահ, սարսափ։ — Ով գիտե, նորից յեկան, կոտորեցին, տարան, — ում պետքն եր, ամենքը գերի եյին իրենց սև մտքերին։ Գիշերը կապարի պես ծանրացել եր նրանց վրա։

Եդպես եր հանգստանում գյուղը։

*
* *

Իսկ դպրոցը, ինչ դպրոց... շենքա յեր ամեն ինչ. ուսման մեծ մասը խըրատ։ Տերտեր, տիրացու կամ փայտոն կոճակով ուսուցիչ, միևնույնն եր, հարուստին, քյոխվին գերի եյին։

Այդպես եր Նոյեմբերից առաջ. դու հիշում ես, դու տեսել ես պիոներ։

*
* *

Այսոր ամեն ինչ փոխվել է հիմքից, դու տեսնում ես, դու ապրում ես, պիոներ։

Առավոտն արևի հետ զարթնում է կյանքը գործարաններում։ Մարդիկ ուրախ, առույգ շտապում են... Պարապ մարդ չկա, հերթ չկա, կռիվ չկա։ Փողոցներում բահ ու բրիչի յերգն է լըսվում... քանդում են, շինում, ուղղում, հարթում, սյուներ տնկում, թելեր անցկացնում...

Գիշերները հանգիստ է... Շիրակի դաշտում լուսինը լողում է ջրանցքում, գյուղացին բահը ձեռին ջուր է տալիս իր արտին։

Բայց գիտե՞ս, պիոներ, մեր կյանքը լոկ հանգիստ չէ, կամ Նոյեմբերի տոնը՝ ուրախ մի վայրկյան...

Մեր կյանքն աշխատանք է, պայքար, խավարի դեմ կռիվ։

Խփիր թմբուկիդ, պիոներ. քայլիր հպարտ, ուրախ...

Զայնիր ձախ, աջ... մեր կյանքը նոր է... դեռ Նոյեմբերներ շատ կան։

Պիոներ, պատրաստ։

# ԼՍԻՐ ՊԻՈՆԵՐ

Հաղթական Հոկտեմբերի 8-րդ տարեդարձին ընդմիշտ հեռացավ մեզանից ընկ. Ֆրունզեն։

Հեռացավ մեկը նրանցից, վորոնք տասնյակ տարիների ընթացքում բանտի, աքսորի, կախաղանի սարսափների միջից անցնելով առաջնորդեցին բանվորներին և աշխատավոր գյուղացիներին դեպի Կարմիր Հոկտեմբերը։

Ընկ. Ֆրունզեն մեկն եր նրանցից, վորոնք իրենց ամբողջ կյանքը նվիրել եյին բանվորության և գյուղացիության ազատագրական պայքարին։

Դեռ յերիտասարդ, 19-ամյա Ֆրունզեյին՝ 1904 թվին մենք տեսնում ենք հեղափոխականների շարքերում, վորպես բոլշևիկ։

Մի տարի հետո, 1905 թվականին, Ֆրունզեն արդեն հեղափոխական բանվորների ղեկավարն եւ։ Նա կազմակերպում ու ղեկավարում է Իվանովո-Վոզնեսենսկ քաղաքի բանվորների հեղափոխական գործադուլը։

1905 թվի հեղափոխության ժամանակ, յերբ առաջին անգամ Ռուսաստանի բանվորները և գյուղացիները զենք բարձրացրին շահագործողների ու բռնակալների դեմ, ընկ. Ֆրունզեյին մենք տեսնում ենք Մոսկվայում՝ հեղափոխության դիրքերի վրա կռվելիս։

Վորպես փորձված հեղափոխական և բոլշևիկ, ընկ. Ֆրունզեն կուսակցական մի քանի կազմակերպությունների կողմից մասնակցել է կուսակցության մի շարք համագումարներին։ Նա միշտ յեղել է ընկ. Լենինի հավատարիմ ու ամենալավ աշակերտներից մեկը։



Ֆրունզեյի համար անպակաս է յեղել հալածանքը, բանտն ու աքսորը և նույն իսկ մահվան պատիժը։ Այս բոլորը, ցարի տիրապետության սև օրերին, Ֆրունզեյի անբաժան ընկերներն են յեղել։ Սակայն Ֆրունզեն յերբեք չի ընկճվել, չի հուսահատվել։ Նա միշտ համոզված է յեղել, վոր բանվորի և աշխատավոր գյուղացու պայքարը մի օր հաղթանակ կտանի, կբերի նրանց ազատ կյանք ու յերջանկություն։ Այդպես էլ յեղավ։

1917 թվի հոկտեմբերին բանվորները և գյուղացիները ձեռք բերին իրենց ազատությունը։ Բանվորների և գյուղացիների յերկարամյա պայքարը հաղթանակով պսակվեց։

Սակայն քնած չեյին բանվորների և գյուղացիների թշնամիները — գործարանատերերն ու կալվածատերերը։ Նրանք ուրիշ յերկիրների բուրժուաների օգնությամբ կազմակերպեցին իրենց հակահեղափոխական բանակները։ Այդ բանակներով նրանք հարձակվեցին նորածին Խորհրդային իշխանության վրա, ցանկանալով հրով ու սրով վոչնչացնել բանվորների և գյուղացիների ազատությունը։

Հոկտեմբերի նվաճումները վտանգի մեջ եյին։ Պետք եր պաշտպանել այդ նվաճումները։ Դրա համար հարկավոր եր ուժեղ կարմիր բանակ, իսկ այդպիսին չունեյինք։ Պետք եր ստեղծել։

Յեվ ընկ. Ֆրունզեյին տեսնում ենք այդ ծանր ու դժվար աշխատանքի գլուխն անցած։ Նա հանդիսանում է անհաղթ կարմիր բանակի կազմակերպիչներից մեկը և վերջը դառնում է նրա ղեկավարը։

Իր կազմակերպած բանակի գլուխն անցնելով նա ջարդում է մեկը մյուսի յետևից հակահեղափոխական բանակները։

Բանվորները և գյուղացիներն ազատ շունչ են քաշում, անցնում իրենց քայքայված յերկիրը շենացնելու գործին։

Պիոներ, այն մարդը, վոր տարիներ շարունակ կռվեց բանվորի և գյուղացու յերջանկության համար, չկա այլևս։ Հին փորձված հեղափոխականներից մեկն ևս հեռացավ։ Բոլշևիկների հին գվարդիայի շարքերը նոսրանում են։ Ավելի սեղմենք մեր պիոներական շարքերը։

Ուսումնասիրենք ընկ. Ֆրունզեյի և նրա ընկերակիցների՝ հին հեղափոխական կռիվների մեջ ծերացած բոլշևիկների կյանքը։ Մեր աշխատանքի ու գործունեության ամեն մի քայլը համեմատենք նրանց կատարած աշխատանքի հետ և պատրաստվենք նրանց պես պայքարելու և աշխատելու։

Պայքարը չի վերջացել։ Մեծ կռիվն առաջներս է։ Լենինի գործը — կոմմունիզմի կառուցման գործը — պետք է ավարտել։

Այս է ասում մեծ հեղափոխականի՝ ընկ. Ֆրունզեյի մահը։ Այս է ասում Հոկտեմբերի 8-րդ և Հայաստանի Նոյեմբերի 5-րդ տարեդարձը։

Այդ աշխատանքին ու պայքարին, պիոներ, պատրաստ։



Ա. Լունաչարսկի

# ԱԿՎԱՐԻՈՒՄ

Շատ լավ է հնչում ակվարիում բառը։ Բայց ավելի հետաքրքիր և գրավիչ է դառնում, յերբ մոտիկից ծանոթանում ես ակվարիումի հետ և դիտում նրա մեջ յեռացող կյանքը։

Ակվարիումը ապակե պատերով մի աման է, վորի տակը յերկու սանտիմետր հաստությամբ գետի մաքուր ավազ և մինչև ամանի բերանը (քիչ պակաս) ջուր է լցված։ Ավազի մեջ տնկում ես մի քանի ջրաբույսեր և ջրի մեջ թողնում փոքր ձկներ, գորտի շերեփուկներ, տզրուկ, կոչալեղ, խեչափառ, ջրային միջատներ, նրանց թրթուռները և ուրիշ մանր կենդանիներ։

Ակվարիումը մեզ հետաքրքրում է, վորովհետև նրա մեջ կարելի յե դիտել վորևե բույսի կամ կենդանու կյանքն ամբողջապես—նրա կենցաղը, սնվելը, շարժվելը, աճելը, բազմանալը, ձևափոխությունները։

Ակվարիումը մեր առաջ ներկայացնում է բնության առանձնացրած մի կտոր, մեծ բնության մի փոքրիկ պատկեր, վորի մեջ դու կտեսնես և՛ կենդանու կյանքի ընթացքը, և՛ նրա հարմարվելը շրջապատի պայմաններին, և՛ գոյության կռիվը։ Դու կտեսնես թե ինչպես պարազիտ տզրուկը կպչում է գորտին, ծծում նրա արյունը և հետո իր քեֆին, ալիքաձև լողում, կամ պատից պատ կպչելով գրոհում ակվարիումի մի ծայրից մյուսը։

Դու կտեսնես նաև ձկան հրաշալի և ճկուն շարժումները։ Ահա նա կարծես անշարժ մնում է նույն տեղը․ յեթե լավ դիտես, կտեսնես, վոր նա մեղմ շարժում է իր լողաթևերը և սքանչելի կերպով հավասարակշռություն պահպանում։ Քիչ հաց մանրիր ջրի յերեսին․ ձուկն իսկույն զգում է հացի մանրուքի թափվելը, ուժեղ հարվածում է պոչով և արծաթագույն կողերը փայլեցնելով լողում է դեպի ջրի յերեսը։ Իսկապես վոր նա իրեն զգում է «ինչպես ձուկը ջրում»։ Այդպես են ասում, յերբ ուզում են ցույց տալ, թե վորևե մարդ գտել է իրեն հարմար միջավայրը։

Մի քիչ էլ դիտենք։ Դու տեսնում ես ինչ վոր մանր կետեր, վորոնք լվի նման վոստոստում են ջրի մեջ – դրանք ջրային լվերն են՝ դաֆնիաները։ Վորսանք նրանցից մեկը և դիտենք խոշորացույցի տակ։ Այն, ինչ վոր մենք սովորում ենք մարդու մարմնի մասին գրքերով, նկարներով ու փորձերով, պատկերանում է քո առաջ իսկությամբ։ Դու պարզ տեսնում ես նրա մարմնի կազմվածքը, վորովհետև նա թափանցիկ է։ Այդպիսի թափանցիկ կենդանիներ շատ կան ջրերում։ Նրանք հարմարվել են իրանց շրջապատին՝ ջրին, և այդպիսով պաշտպանվում են գիշատիչներից։

Բայց գիշատիչներն էլ քնած չեն։ Նրանք շատ լավ տեսողություն ունեն և ուժեղ են։ Այ, տես ջրասեր բզեզին․ նա հարձակվում է նույնիսկ շերփուկների ու ձկների վրա և նրանց հոշոտում իր պինդ ծնոտներով։ Այդպիսի գիշատիչների թիվն էլ պակաս չի ջրերում։ Վերցնենք հենց մեր սովորական մոզը․ քանի քանի կենդանիներ է ուտում նրա թրթուռը մինչև վոր հասունանում է ու ջրից դուրս գալիս։ Ջրից դուրսն էլ՝ սավառնակի նման թևերը տարածած, նա սլանում է օդում և մոծակներ ու մժեղներ կուլ տալիս հենց թռչելիս։

Ակվարիումի արժեքը բարձրանում է մանավանդ ձմեռը, յերբ դուրսը ցուրտ է և բնություն խոր քուն է մտել։

Այդ ժամանակ մենք մեր սենյակում ունենք բնության արթուն մի անկյուն, վոր մեզ հիշեցնում է առվակի կողքին, կամ գետի ափին, տաք յեղանակի դուրեկան օրերին անցկացրած ժամանակը։

Պետք է աշխատել, վոր ակվարիումը բավական մեծ լինի։ Ակվարիումները լինում են զանազան մեծության՝ մինչև մի քանի վեդրո տարողությամբ։ Փոքր ակվարիումը պիտի լինի գոնե մեկ-յերկու լիտրանոց։ Կարելի յե վերցնել ապակե բանկա, լցնել հատակին լավ լվացած ավազ։ Ջուրը պետք է հաճախ փոխել ամեն շաբաթ կամ տաս օրը մեկ անգամ։ Ջրաբույսեր

և ջրային կենդանիներ՝ կարելի յե գտնել շրջապատող բնության մեջ՝ եքսկուրսիաների ժամանակ։ Պետք ե աշխատել հավաքել նրանց կանգնած կամ դանդաղ հոսող ջրերից։ Արագ հոսող ջրերի կենդանիներն իրենց այնքան ել լավ չեն զգում ակվարիումի մեջ։ Գիշատիչներին չպետք ե մյուսների հետ նույն ակվարիումի մեջ տեղավորել, նրանք կարճ ժամանակում կվոչնչացնեն միացած բոլոր կենդանիներին։

Դիտողությունները ավելի լուրջ դարձնելու համար, պետք ե գրի անցկացնել հուշատետրի մեջ, նշանակելով որը և զանազան պայմանները՝ լույսը, ջերմությունը։ Ակվարիումը պետք ե տեղավորել լույս տեղ, պատուհանի մոտ։

Հարատև դիտողությունները քեզ ցույց կըտան, վոր ամեն մի կենդանի ունի իր կենցաղը, իր առանձնահատկությունները։ Դու կգաս այն յեզրակացության, վոր բնությունն ուսումնասիրելու համար անպատճառ հեռու տեղ չպետք ե գնալ։ Մեր ամենահասարակ և սովորական կենդանիները և բույսերն ել ունեն շատ հետաքրքիր հատկություններ, վորոնց ուսումնասիրությունը ցույց կտա թե ինչպես բնության ամեն անկյունում ել կյանքը յեռում ե, փոփոխվում և շարունակ զարգանում։

Ս. Արարատյան



Յե. Յարոսլավսկի

ՇԱԴՐՈՒԽՆՑ

# ԻՄ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայաստանի Խորհրդայնացման 5-րդ տարեդարձին կուզեյի, վոր պիոներները՝

1. Իրենց ֆիզիքական վարժություններ հետ զուգընթաց, ավելի շատ զբաղվեյին մտքի վարժություններով։

2. Թեթևացնեյին իրենց աշխատանքը և դասավորեյին իրենց աշխատանքի ժամերը։

3. Ուսումնասիրեյին ընկ. Լենինի և կոմմունիստական կուսակցության մյուս ղեկավարների կյանքն ու գործունեյությունը. գնային նրանց ցույց տված ճանապարհով։

4. Ավելի մոտենային գյուղի պատանեկությանը, ամբողջովին գրավեյին չքավոր և միջակ գյուղացիների զավակներին պիոներական շարքերը։

5. Ավելի շատ աղջիկներ գրավեյին իրենց շարքերը, վորովհետև առանց նրանց՝ անհնար ե հեղափոխության հաղթանակը։

6. Ինչքան կարելի յե շատ ռուս, թուրք, յեզիդ և այլ ազգի պատանիներ ընդունել պիոներների կազմակերպության մեջ, վորպեսզի պիոներները ավելի լավ յուրացնեն բոլոր ազգերի աշխատավորների համերաշխության անհրաժեշտությունը, հեղափոխության հաղթանակի համար։

7. Թող պիոներները հիմիկվանից ծանոթանան, թե ինչպես պետք ե կոլլեկտիվ ուժերով տնտեսությունն առաջ տանել, վորպեսզի մեծանալիս իրենց պապերի պես չարքաշ չապրեն, այլ ապրեն համայնական ու յերջանիկ կյանքով։



Յա. Սվերդլով

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ

## ԱՄԵՆ ՊԻՈՆԵՐ ՈՐՎԱ ԻՐ ԾՐԱԳԻՐԸ ՊԵՏՔ Ե ՈՒՆԵՆԱ

Ազատ ժամը թանգ է ամեն ինչից, բայց մենք տեսնում ենք, վոր պիոներները և կոլլեկտիվներն իրենց ազատ ժամերն իզուր են գործ դնում։ Որինակ, կան կոլլեկտիվներ, վորոնց պարապմունքները նշանակվում են ժամը 8-ին, բայց սկսվում՝ 9-ին. սա նկատվում է բոլոր կոլլեկտիվներում։

Բացի այդ, կան պիոներներ, վորոնք ամբողջ որը հեծանիվով են զբաղված. լավ է հեծանիվ նստել, բայց վոչ չափից դուրս։

Վորպեսզի մեր պիոներներն իրենց ժամերը չը վատնեն, հարկավոր է, վոր յուրաքանչյուրը ունենա իր որվան ժամերի ծրագիրը, թե վոր ժամին, ինչ է անելու, իսկ (կոլլեկտիվները) մեր կոլվարները պետք է ճիշտ ժամին իրենց պարապմունքները սկսեն։

Պատկոր՝ Բենսար

## ՀԱԿԱԿՐՈՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՅԵՎ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Պիոներական կոլլեկտիվում հակակրոնական աշխատանք կարելի յե տանել ուսուցչի միջոցով, վորան կարելի յե խնդրել դա բացատրի բնական յերեվույթների մասին (անձրև, ձյուն, կարկուտ և այլն)։ Ամեն պիոներն այդ բոլորը լսելով կարող է հորը, մորը և իրենց ընտանիքի բոլոր անդամներին բացատրել, վոր բնական զանազան յերևույթների պատճառը աստվածը չե և այլն։

Մեկ էլ չպետք է հակակրոնական աշխատանքներ տանել տոներին, այլ միշտ, հարմար ժամանակ, յերբ յեկած դեպքում։

Պատկոր՝ Գրիգոր

## ՊԱՏԿՈՐՆԵՐ ԵՆ ԸՆՏՐՈՒՄ

Ընկերներ, մեզ հայտնի յե, վոր ընտրովի պատկորը վաղուց վերացվել է, բոլոր պատանի թղթակիցներն էլ պատկոր են։ Բայց Լենինականի կուսգավկոմին կից «Իսկրա» կոլլեկտիվում դեռ շարունակում են պատկորներ ընտրել և վերընտրել։ Նրանց կարծիքով, ընտրովի պատկորն իր մշտական թղթակցություններով պիտի ազդեցություն ունենա պիոներների վրա, նոր թղթակիցներ առաջ քաշի։

Վոչ, ընկերներ, դա սխալ է։ Պատկորի նշանակությունն այդպես չը պետք է հասկանալ։

Պատկորը նա յե, ով գրում է։

Պատկոր Զ. Մարուքյան

## ԳՐԱՎԵՆՔ ԱՂՋԻԿՆԵՐԻՆ

Գյուղական պիոներական կոլլեկտիվներում աղջիկներ չկան, յեղած տեղերում էլ շատ քիչ տոկոս են կազմում։ Սա խոշոր բաց է մեր կազմակերպության համար։

Ամեն մի կոլվար, ողակավար և պիոներ պետք է աշխատի գյուղի աղջիկներին գրավել կազմակերպության մեջ, նրանց էլ մասնակից դարձնելու պիոներական և գյուղի հասարակական աշխատանքներին։

Ինչպես տանել այդ աշխատանքը։

Արդեն դպրոցական պարապմունքներն սկսել են։ Աղջիկներից շատերը դպրոց են գնում։ Պիոներները նրանց հետ մի նստարանի յեն նստում։ Պիոներները կարող են իրենց խաղերի, աշխատանքների միջոցով դպրոցում նրանց կամաց-կամաց բերել կազմակերպության մեջ։

Այս ասպարեզում խոշոր աշխատանք կարող են կատարել աղջիկ պիոներները։ Դեպի գործ։

Նազար Խաչատրյան

## «ՊԱՏԻԺԸ ԿՈՒՂՂԻ» ՀՈԴՎԱԾԻ ԱՌԹԻՎ

«Պիոների» № 1-ում ընկ. Հայկը իր հոդվածի մեջ ասում է հետևյալը. «Այն պիոներները, վորոնք դպրոցում դասերից կաղում են, պետք է նրանց վերաբերյալ խիստ լինել և կոլլեկտիվը ձեռք առնի համապատասխան միջոցներ»։ Բայց յեթե խնդիրը մանրամասն քննենք, են ժամանակ մի հարց է ծագում, թե արդյոք, այդ թույլ պիոներները իսկապես ծույլ են, թե կա մի ուրիշ պատճառ, վորը նրանց դասերից կաղելու առիթ է տալիս. հաստատ կարող ենք ասել, վոր այդ պատճառը նորից աշխատանքների ծանրաբեռնման խնդիրն է (նագրուզկան)։

Որինակ, 7 ամյա № 7 դպրոցի աշակերտ ընկ. Հ. վոչ պիոներ ժամանակ առաջնակարգ աշակերտներից եր և ուսուցիչները միշտ գոհ եյին նրանից։ 25 թվի ուսումնական տարվա II կիսամյակին ընկերը սկսեց դասերից կաղալ։

Ինչ եր պատճառը։ Պատճառը այն եր վոր նա դպրոցում աշխորհրդի անդամ եր, զանազան կոմիսիաների մեջ եր, պատի թերթի թղթակից եր, պիոներ. կոլլեկտիվում ողակավար եր, և հետո կոլվարի ոգնական դարձավ։ Ենքան աշխատանք եյին բարձել ընկերոջ վրա։

Իսկ կային ենպիսիներ, վորոնք ազատ թև եյին գալիս և իզուր տեղ ժամավաճառ լինում։ Ահա թե ինչն է պատճառը, վոր պիոներներից վոմանք դպրոցում դասերից կաղում են։

Մենք չպետք է նրանց պատժենք, վորովհետև նրանք ծույլ չեն, այլ պետք է աշխատենք, վոր աշխատանքի կանոնավոր բաժանում լինի։

Պատկոր՝ Թագուհ

## ՄՈՒՆՋ ՄԱՆՈՒԿԸ

Ղարաքիլիսայի «26»-ի անվան պիոներական կոլեկտիվը հավաքվել էր պարապմունքի։

Մի խումբ պիոներներ, շրջապատած, նիհար դեմքով, լղար, մոտ 12 տարեկան տղայի բերին ակումբ։

— Ուզո՞ւմ ես մեր ընկերը լինել — զանազան կողմից հարց էին տալիս պիոներները։

Մանուկը գլուխը քաշ գցեց. հետո կամաց-կամաց բարձրացնելով նայեց շրջապատողներին, պատի նկարներին և վերջապես հարցնողին ու շրթունքները չփչփացնելով վոչինչ չկարողացավ ասել Հարցը յերկրորդ անգամ կրկնվեց դարձյալ նույն լռությունը, պիոներներից մի քանիսը տեսել էին Մանուկին, մի քանի որ առաջ մութ փողոցում, պատի տակ նստած։

Ուզում ես պիոներ լինել, դե, ասա մի ամաչի, շարունակ հարցնում էին պիոներները։

— Մը, մը, մը, մեկ — շրթունքները ծըպ ծըպացրեց նա։

— Քանի՞ տարեկան ես.

— Մը՛, մը՛, մը՛, մեկ։

— Անունդ ինչ է

— Մը՛, մը՛, մը՛, մեկ...

Նրա վերջին արտասանություններից պարզվեց, վոր նա մունջ էր. պետք է օգնել, պետք է ընկերանալ նրա հետ։

Պարապմունքից հետո նրան տարան տուն։ Ազատ ժամերին մի քանի պիոներ վերցնում էին Մանուկին տանում գրոսանքի և այնտեղ նրան պատմում հեքիաթներ, ապա հարցեր էին տալիս վորպեսզի նա խոսել իմանա։ Մեր Մանուկը կամաց-կամաց սկսեց խոսել ու հիշողությունը զարգանում էր։

Յերբեմն կոլեկտիվի ժողովում լուրջ հարցեր վորոշելիս Մանուկը ձեռ էր բարձրացնում, և սկսում էր իր գիտեցածն ասել, վոր բոլորովին ժողովի նյութին չէր վերաբերում — պիոները հավատարիմ է բանվոր դասակարգին, և այլն։ Նա խոսում էր կտրտված։ Նրան սովորացրին պիոներները։ Այժմ նա պիոներ է և սովորում է քաղաքի պիոներների անգրագետների խմբակում և արդեն գիտի մի քանի տառ։

Պիոներները ստեղծեցին Մանուկի համար հաջող պայմաններ և նա խոսել սովորեց։

**Պետրոս Մելքոնյան**

## ՄԵՐ ՖՈՐՊՈՍՏՆԵՐԸ

Յերևանում ֆորպոստների կազմակերպչական աշխատանքները բավականին հաջող են ընթանում։

Թե ուսուցչության և թե կոմյերիտմիության բջիջները ֆորպոստների կազմակերպման հենց առաջին որից մեծ հետաքրքրություն են ցույց տալիս դեպի ֆորպոստները։

Ֆորպոստները մեր դպրոցներում արդեն անցել են աշխատանքի։ Ֆորպոստների օժանդակությամբ այս տարի դպրոցական ինքնավարությունները անցկացրին Հոկտեմբերյան Հեղափոխության 8-րդ տարեդարձը։ Դպրոցներում կազմակերպված են մի քանի սեկցիաներ, վորոնց նախաձեռնողները դարձյալ ֆորպոստներն են։

Աշխատանքի ընթացքում մենք փորձառություն ենք ձեռք բերում, վորը կօգնի ավելի լավ տանելու ֆորպոստների աշխատանքները։

**Պատկոր Ցերենտ**

## ԿՈԼԼԵԿՏԻՎԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԻՑ

Կիրակի յեր..

Կոլեկտիվի հավաքույթի որ։

Ժամը 9-ն է արդեն և ահա մեկիկ-մեկիկ պիոներները հավաքվեցին իրար շուրջ և սկսեցին զրուցել իրենց աշխատանքների մասին։

— Ընկերներ, — ձայն տվեց կոլվարը — այսոր մենք պետք է ունենանք կոլեկտիվի հավաքույթ, բայց չնայած դրան ցանկություն կա մի շաբաթորյակ կատարելու։ Ա՛յ, այնտեղ մի առու կա, մեջը քար ու հողով լցված. Ջուրը լավ չի գնում և կորչում է ճամփին։

Այսպես ասաց և ձեռքն առուի կողմը մեկնեց։

Մի պահ լռություն տիրեց ու հանկարծ մի ուժեղ ձայն թնդաց.

Գնանք։

* * *

Զանգած մի քանի րոպե հավաքվեցին պիոներները բահերով ու բրիչներով և յերգելով.

. . . . . . . . .

«Պատանի կոմունիստ
Դու նոր կյանքի շինարար»։

Գնացին առուի մոտ։ Դրոշակը տնկեցին մի կողմ և անցան գործի։

* * *

Որը կիրակի յեր։ Գյուղացին ըստ սովորականի այսոր ավելի քիչ էր զբաղված և անցուդարձն ավելի շատ էր։

Աշխատանքը գրավիչ էր. բոլորը հրճվում էին։

— Յերանի ձեզ...

— Նոր կյանքը դուք պիտի ստեղծեք...

— Կյանքը ձերն է. մերն անցավ...

Այսպես էին ասում ու հեռանում անցվոր գյուղացիները։

Այդ որից հետո ջուրն ավելի լավ ու արագ էր այգի հասնում։

* * *

Առուն պատրաստ էր արդեն։ Նորից լսվեց պիոներների ձայնը և նրանք յերգելով։

. . . . . . . .

«Մեր աշխատանքով շինարարական,
Կերտենք, ընկերներ, կարմիր ապագան.
Դե շուտ վերջացնենք գործը Լենինի
Վոր վողջ աշխարհում կոմմունա լինի»։

Վերադարձան տուն։

**Ամագեո**

Խ՛ՆԿՈ ԱՊԵՐ

# ԱՌՈՂՋ ՍԵՐՈՒՆ



Թելքի պուտուկ, դափ-դարտակ,
Ուժից բարձր բեռան տակ
Լեզուդ կախած թիզ ու կես
Եսե հոգիդ փչում ես։

Եդ եր պակաս, տո Փիլոս,
Պիոներ ու պապիրոս.
Ձեղած տեղը՝ գողություն,
Քեզ, պիոներ՝ թողություն։

Ընկերիդ տուր սպիչկա.
Քանի չրթես սեմիչկա.
Աչքերս լույս, էլ ինչ կա.

Պիոներ եք թե վորձակ,
Դուք Ձեր գլխին ինչ դարձաք.
Հերիք իրար դուք խեղդեք,
Հերիք իրար քիթ ջարդեք։

Ահա մեկն էլ ոյինբազ.
Թոկի վրա քյանդրբազ.
Թռչկոտում ե թարազով,
Վարդապետի պոպոզով։

Ջու, ջու, ջու ջու, հավ ու ձիվ,
Լոպպազները հեծանիվ.
Հլա մտիկ, ժողովուրդ,
Մեկի բանը բուրդ ե, բուրդ։

Ե՛յ, այ գժեր, բոլ ե, բո՛լ,
Եդ պատի՞ժ ե թե ֆուդբոլ.
Տեսնենք վո՞րը կհաղթի,
Բանը մնաց քոռ բախտի։

Վիզդ տանձի բարակ պոչ,
Դուռն ես ծեծում տանտիրոջ.
Մեծ կողպեքով նա փակ ե,
Ինչքան կուզես՝ դու թակե.
Պիոներն ջիղ չունիք,
Կոմսոմոլում տեղ չունիք։





# ԿՈՄՍՈՄՈԼԻՆ



Դեռ արևը չծագած,
Յես շորերս եմ միշտ հագած.
Պիոներ եմ յես զգաստ
Ու իմ գործին «Միշտ պատրաստ»։

Յես ինձ համար առանձին
Ունիմ փոշի ու վրձին.
Լվանում եմ ամեն որ
Բերան, ատամ, կամավոր։



Պիոներ ենք. մեզ պարծանք
Ամենորյա խաղ, մարզանք.
Քայլերթում ենք՝ մեկ, յերկու,
Հետևելով մեկ մեկու։

Ծագեց, կանչեց ալ արև.
«Պիոներներ, ձեզ բարև.
Ջրվեժի տակ լողացեք,
Շողքերիս տակ շողացեք»։



Ջրվեժի տակ լողացանք,
Արևի տակ զորացանք.
Աշխուժացանք ողակով
Խաղ ու մարզանք սպորտով։

Պիոներներ պատանի,
Առույգ, աշխուժ, պիտանի.
Տոմսեր առեք այ հիմի,
Անդամ դառեք Կ. Յե. Մ-ի։












# ԳԱԶԵՐԸ

Առաջվա պատերազմները բոլորովին նման չէին այժմվա պատերազմներին։ Առաջ կռվում էին գլխավորապես սառը զենքերով—թրերով, նիզակներով, սուրգերով և դաշույններով։ Այդ պատճառով էլ առաջ ֆիզիքական ուժը մեծ նշանակություն ուներ, թուլակազմ զինվորներ բոլորովին չկային։

Բայց յերբ հնարեցին վառոդը և նրա հետ միասին հանդես յեկան հրացաններն ու թնդանոթները — դրությունը միանգամայն փոխվեց։ Այստեղ արդեն ֆիզիքական ուժը չուներ այն խոշոր նշանակությունը, վորովհետև հընարավորություն ստեղծվեց հարվածել թշնամուն վորոշ տարածությունից։

Վերջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ կռվելու միջոցները դարձյալ մեծ փոփոխություններ կրեցին։ Հանդես յեկան հեռաձիգ թնդանոթներ, գնդացիրներ և սավառնակներ։ Զինվորները այլևս բերդերում չէին նստում։ Դրա փոխարեն թշնամու սահմանների ամբողջ յերկարությամբ, հարյուրավոր վերստերով ձգվեցին խրամատներ։ Նրանց մեջ պահվում էին զինվորները և այնտեղից իրար վրա կրակում։ Գրոհ էին տալիս միայն այն ժամանակ, յերբ անհրաժեշտ էր լինում տիրանալ թշնամու խրամատներին։ Գրոհից առաջ մեծ նախապատրաստություններ էին տեսնում։ Հետևում թաքնված թնդանոթները հարյուրավոր փթերով պողպատ էին շպրտում թշնամու դիրքերի վրա։ Այդ հսկայական «չեմոդանները» հարթության վրա այնպիսի փոսեր էին փորում, վոր նրանց տեղը, անձրևից հետո, իսկական լճեր էին գոյանում։ Այդպիսի նախապատրաստությունից հետո, զինվորները դուրս էին թռչում իրենց խրամատներից, անցնում փշալարավոր արգելքներից և հրացանները ձեռքներին գրոհ տալիս թշնամու դիրքերի վրա։

1915 թվի սկզբներին, կռվի այս միջոցներին ավելացավ մի «կատարելագործում» ևս։ Գերմանա-



կան զորքերն առաջին անգամ բաց թողին այսպես կոչված «հեղձուցիչ գազեր»։ Այն մարդիկ, վորոնք ընկնում էին այդ գազերի քուլաների մեջ, կարճ ժամանակի ընթացքում մեռնում էին։

Անկասկած ապագա պատերազմները կվերածվեն բացառապես քիմիական և օդային կռիվների։ Թշնամիների վրա կթափվեն զանազան թունավոր գազեր, սավառնակներից թիկունքի քաղաքների վրա կսկսեն նետել քիմիական վնասակար նյութեր պարունակող ռումբեր։

Քիմիական պատերազմի մի խոշոր մասնագետ՝ մայոր Լեֆեբյուրը յենթադրում է, վոր այն յերկիրը, վորը կգտնի մահաբեր գազի գաղտնիքը, կկարողանա ծածկել իր սահմաններն այդ գազի անթափանց շերտով, նրա մեջ վոտք չի կարող կոխել և վոչ մի բանակ։

## ԻՆՉՊԻՍԻ ԳԱԶԵՐ ԵՆ ԼԻՆՈՒՄ

Գազերը զանազան տեսակի յեն լինում։ Նրանցից մի քանիսն արագ ցնդող են, մյուսներն էլ կարող են յերկար ժամանակ մնալ միևնույն տեղում։ Առաջին խմբին պատկանող գազերը կոչվում են անկայուն, իսկ յերկրորդները—կայուն։ Գրոհից առաջ բաց են թողնում անկայուն գազ, վորովհետև այս դեպքում կարևոր է վոր գազն իր ցանկալի ազդեցությունը թողնի թշնամու վրա ու անմիջապես հեռանա, ցրվի։ Կայուն գազեր գործ են ածում այն դեպքերում, յերբ անհրաժեշտ է կանգնեցնել թշնամու առաջխաղացումը։

Գազերն իրենց կործանարար ազդեցությամբ էլ տարբեր տեսակի յեն լինում։ Մի քանիսը վնասում են միայն օրգանիզմի առողջությունը, իսկ մյուսներն ուղղակի մահաբեր են։ Մի շարք գազեր գըրգռում են լորձաթաղանթներն ու թունավորվածը սկսում է արտասվել, սիրտը քանդվում է, փռշտում է։ Մյուս տեսակները գլխացավ են առաջ բերում և ուշաթափ անում։ Յերրորդ տեսակը (ինչպես օրինակ «գորչիչնի գազը»), այրում է կաշին և վերքեր առաջացնում։

Անցյալ կռվում գործադրվող գազերը հիմա բավարար չափով ուժեղ չեն համարվում։ Բուրժուական յերկրների քիմիկոսները յե-

ռանդուն կերպով աշխատում են գտնել այնպիսի մի գազ, վորը մի քանի անգամ ավելի ուժեղ ներգործություն ունենա։

Լոնդոնի համալսարանի պրոֆեսոր Բերնար հայտնում է, վոր գըտել է անգույն ու առանց հոտի մի նոր թունավոր գազ։ Այդ գազը ներշնչող մարդը մինչև անգամ չի յել կասկածում, թե ինչ վտանգի մեջ է ինքը և 6—12 ժամից հետո սոսկալի տանջանքներով մեռնում է։ Այդ գազը բավական ծանր է և ցած իջնելով կարող է մնալ բնական և արհեստական խորություններում մոտ 2 օր։ Սավառնակը կարող է բարձրացնել այդ գազից 2 տոնն (122 փ.), վորը յերբ պայթի, բավական կը լինի, վորպեսզի կես վերստ տարածության վրա վոչ մի կենդանի շունչ չմնա։

Այսպիսով, այժմ արդեն, առաջին անգամ թունավոր գազ թողնելուց 9 տարի հետո միայն, հընարվել է այդպիսի մի սարսափելի գազ։ Եվ ուրիշ ինչ սարսափներ են պատրաստելու կապիտալիստներն ապագա պատերազմների համար, մենք դեռ չգիտենք։

## ԻՆՉՊԵՍ ԵՆ ԳՈՐԾՈՒՄ ԹՈՒՆԱՎՈՐ ԳԱԶԵՐՈՎ

Այն գործարանները, վորոնք թունավոր գազեր են պատրաստում բարձր ճնշման տակ այդ գազերը մտցնում են պողպատյա գլանների մեջ և ծածկում ծորակով, վորը վինտիլ է կոչվում։ Հեղձուցիչ գազով ռումբը հաճախ լցնում են այնպիսի հեղուկով, վորը պայթելուց անմիջապես գոլորշիանում է և թունավոր գազի ամպեր է տալիս։ Գազային ռումբերն արձակում են այնպես, ինչպես սովորական թնդանոթի ռումբեր։

Գազային գրոհներն այսպես են լինում։ Յերբ քամին փչում է դեպի թշնամու դիրքերը, գազերի գլանները շուռ են տալիս քամու ուղղությամբ և բաց անում ծորակները։ Քամին տանում է իր հետ գազի քուլաները թշնամու դիրքերի վրա։ Բայց այս միջոցը անհարմար է այն պատճառով, վոր նախ միշտ բարեհաջող քամիներ չեն լինում, յերկրորդը՝ յերբ քամին փչում է ցանկացած ուղղությամբ, այս դեպքում էլ նա վոչ այնքան ուժեղ պիտի լինի, վոչ էլ այնքան թույլ, վորպեսզի գազը ցրիվ չգա և համահավասար առաջ գնա։ Այժմ միջոցներ են մըտածում նաև գազերը ցանկացած ուղղությամբ տալու։

## ԻՆՉՊԵՍ ԵՆ ՊԱՇՏՊԱՆՎՈՒՄ ՀԵՂՁՈՒՑԻՉ ԳԱԶԵՐԻՑ

Պաշտպանվելու համար էլ կան զանազան միջոցներ։ Ամենալավը



«ռեսպիրատորն» է. այսինքն ռեզինե դիմակ, վորը հագնում են յերեսին։ Նրա մեջ կա մի հատուկ տուփ, վորի միջով օդն անցնելիս մաքրվում է։ Այդ դիմակով մարդը թունավորված օդից էլ կարող է միայն մաքուրը ծծել։

Մյուս պաշտպանվելու միջոցները կայանում են նրանում, վոր մեծ վենտիլյատորներով ցրում են գազի ամպը կամ թողնում թընդանոթի ռումբեր այդ ամպերի վրա։

Սրանք ամենագլխավորներն են, բայց կան էլի մի շարք միջոցներ, վորոնք այնքան էլ վստահելի չեն։

## ԻՆՉ ՈԳՈՒՏ ԿԱՐՈՂ ԵՆ ՏԱԼ ՀԵՂՁՈՒՑԻՉ ԳԱԶԵՐԸ ԽԱՂԱՂ ԺԱՄԱՆԱԿ

Այս մասին Ռուսաստանի հողժողկոմ ընկ. Սմիռնովը ասում է.

«Դաշտերում, բանջարանոցներում և այգիներում մեզ մոտ կան բազմատեսակ վնասատուներ։ Այդ վնասատուները վոչնչացնում են դաշտերի բերքի $1/5$-ը և բանջարանոցների բերքի կեսը։ Ամբողջ Ռուսաստանում դրանց տված վընասը հասնում է 2 միլիարդ ռուբլու։ Մեր աղքատ վիճակում այդքան փողը բավական կլիներ ծածկելու մեր բոլոր պետական ծախսերը»։

Գյուղատնտեսության վնասատուներն են — առնետները, մկները, մորեխը, հացի բզեզը և այլն, վոր ամեն տարի 2 միլիարդ վոսկի ռուբլու վնաս են տալիս մեզ։ Բոլոր յերկրներում նրանց դեմ ուժեղ կերպով կռվում են և այդ կռվի ամենալավ միջոցը քիմիականն է։ Բոլոր այս հիշված կենդանիները թունավորվում են նույն նյութերով, ինչ վոր մարդը։ Ահա այստեղ է, վոր հեղձուցիչ գազերը ահագին օգուտ են տալիս։

Ոդաչուն գյուղատնտեսի հետ միասին սավառնակի վրա յեն վերցնում, իրենց հետ, համապատասխան գազերով լցրած ռումբեր և արձակում են դաշտերի վնասատուների վրա. մի քանի րոպեից հետո «թշնամին» վոչնչացած է լինում։

## ԻՆՉ ՊԻՏԻ ԱՆԵՆՔ ԱՅԺՄ ՄԵՆՔ

Այս բոլոր պատմածներից յերևում է, վոր ապագա պատերազմում ուժեղ կլինի այն պետությունը, վորը կունենա ուժեղ ոդանավատորմ և լավ զարգացած քիմիական արդյունաբերություն, այսինքն այնպիսի արդյունաբերություն, վորը պատրաստի ամեն

տեսակի թունավոր նյութեր ու գազեր։

Խորհրդային հանրապետությունները յերբեք առաջին հերթին իրենք պատերազմ չեն սկսի։ Մեր կառավարությունը շարունակ, միջազգային բոլոր կոնֆերանսներում, հանդես է գալիս վորպես պատերազմի ամենաջերմ հակառակորդ։ Բայց յեթե մեզ անհանգստացնեն, մենք կը կարողանանք պաշտպանվել և մի անգամ ևս ցույց կտանք աշխարհին, վոր ավելի լավ է մեզ հետ հաշտ ապրել։ Բայց վորպեսզի հանկարծակի հարձակվելու դեպքում մենք անզոր չլինենք, պետք է նախօրոք պատրաստ լինենք։ «Ուզում ես խաղաղություն — պատրաստվիր կռվելու»—մենք այս խոսքերը յերբեք չպիտի մոռանանք։ Մենք ստեղծել ենք մի հզոր կարմիր բանակ, աշխարհի ամենաուժեղ բանակներից մեկը, մեզ մոտ աշխատավորության միջոցներով ստեղծվում է ոդանավատորմը, իսկ հիմա մենք պետք է ստեղծենք մեր յերկրում նաև քիմիական արդյունաբերություն։

Ընկ. Տրոցկին ասում է.

«Մեր քիմիական արդյունաբերությունը պատերազմից առաջ ել վողորմելի դրության մեջ եր Բայց այդ ասպարիզում մենք մի առավելություն ունենք, վորովհետև խաղաղ դրությունից պատերազմականին անցնելը վոչ մի ասպարիզում այնքան հեշտ չի կարող կատարվել, ինչպես քիմիական արդյունաբերության ասպարիզում»։ Սա նշանակում է, վոր համարյա յուրաքանչյուր քիմիական գործարան, վորը խաղաղ կյանքի կարիքների համար նյութեր եր պատրաստում, կարելի յե հեշտությամբ ձևափոխել ռազմաքիմիական նյութեր պատրաստող գործարանի։ Օրինակ՝ ներկանյութերի գործարանները տալիս են անհագին ոգուտ, միևնույն ժամանակ յուրաքանչյուր այդպիսի գործարան հեշտությամբ կարող է ծառայել պաշտպանության համար։

Արհեստական պարարտանյութեր և միասատուների դեմ թույներ պատրաստող գործարանները նույնպես շատ ձեռնտու յեն և ելի միաժամանակ կարելի յե նրանց ծառայեցնել ռազմաքիմիական կարիքներին։

Պիոներները միշտ իրենց ուժերը ներածին չափ ոգնում են Խորհրդային հանրապետությանը։ Այս ասպարիզում ևս կարող են մեծ ծառայություններ անել։

Յուրաքանչյուր պիոներ, վորն իրավունք ունի «Ավիոքիմի» անդամ լինելու (14 տարեկանից բարձրը) պետք է անդամագրվի։ Իսկ



Գազային ատրճանակ

յեթե ինքդ չես ել կարող լինել, ապա համոզիր անդամագրվել քո ծնողներին, ծանոթներին և ավագ ընկերներին։ Կոլլեկտիվում ժողովներ կազմակերպիր, հարց բարձրացրու, թե ինչպես և ինչով կարող է կոլլեկտիվն ոգտակար լինել «Ավիոքիմին»։

Գիտցիր, վոր այդ ընկերության յուրաքանչյուր անդամ, ամեն մի ավելորդ ռուբլի, վորը ծախսվում է քիմիական արդյունաբերություն ստեղծելու գործի համար, ամրապնդում է ԽՍՀՄ-ի հզորությունը։

Ժամանակ մի կորցնի,—անցիր գործի։



# ԳԻՏԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

## ՀՍԿԱՅԱԿԱՆ ԻՆՔՆԱԹԻՌ

Ֆրանսիայում, Փարիզի մոտ, մեծ գործարաններից մեկում, վերջերս ձեռնարկել են կառուցելու մի հսկայական մարդատար ինքնաթիռ, վորը թռչելու յե Յեվրոպայից Ամերիկա։ Ամբողջ ճանապարհն անցնելու յե առանց կանգ առնելու—26 ժամում։ Այդ հսկան պետք է բարձրացնի 75 ճանապարհորդ և հարմարեցրած է այնպես, վոր կարող է իջնել թե ջրի և թե ցամաքի վրա։ Նրա բոլոր մասերը պատրաստված են մետաղից։

## ԱՐԵՎԻ ԵՆԵՐԳԻԱՆ

Յերկրի վրա գտնված վառելանյութը դեռ բավարարում է մեր կարիքներին, բայց կը գա մի օր, յերբ նավթի և քարածուխի պահեստները կը վերջանան։ Ի՞նչ պետք է անենք այն ժամանակ. և ահա գիտնականներն այժմյանից սկսում են մտածել, գտնելու ենսրգիայի մի նոր աղբյուր։

Մարդն արդեն կարող է ոգտվել ջրի, քամու ուժից, վորը յերկար ժամանակ անոգուտ կորչում եր։ Վերջերս սկսել է «բռնել արևի ճառագայթները» և դարձնել ելեքտրական ուժ։ Այդպիսով վառելանյութի վերջանալու վախը վերանում է։

## ԱՄԵՐԻԿԱՅՈՒՄ ՖԻԶԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՌԱԴԻՈՅԻ ՈԳՆՈՒԹՅԱՄԲ

Ամերիկայում ով ցանկանա, Ամերիկայի վոր քաղաքումն ել վոր լինի, կարող է ամեն առավոտ իր սենյակում ռադիոյով ստանալ ֆիզդաստիարակության դասեր. դրա համար ամեն մի ցանկացող իր սենյակում պետք է ունենա ռադիո ընդունարան։

Առավոտը, ուղիղ ժամը 7-ին, ռադիո ապպարատի ուժեղ զանգահարությունից սենյակում քնած մարդիկ զարթնում են. այդպես է սկսում իր դասը հայտնի մարմնամարզ Բեգլեն։ Ուժեղ զանգահարություն տալուց հետո, հայտարարում է դասի սկիզբը։

Սկսվում է դասը—տասնյակ հազարավոր մարդիկ սկսում են առողջապահական շարժումներ կատարել։ Բացի այդ. Բեգլեն խորհուրդ է տալիս իր աշակերտներին, թե ինչպես պետք է սնունդ ընդունել, և այլն։



# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ!



— Ո՞ւմ է սպասում իզուր տեղը հակահեղափոխական զինվորը:




ՌԵԲՈՒՍ № 3



ՌԵԲՈՒՍ № 4

## ԼՈՒԾՈՒՄՆԵՐ

№ 1-ին ՌԵԲՈՒՍ

Ես անգամին քեզ խրատ էլ չցանես կտավհատ:

№ 2-րդ ՌԵԲՈՒՍ

Բանվոր դասակարգի ազատագրման պայքարին, ...ոներ, պատրաստ:

...գ/դ չլինելու պատճառով չկարողացանք տպագրել 1 և 2 ռեբուսները լուծողների ազգանունները:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԳԻԱ

Գրաւ-լվար № 258բ. Պետհրատի 2-րդ տպարան, Յերևան Տիրաժ 4500

Է





Գ Ի Ն Ը

25 կ.

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ ԵՆՔ „ՊԻՈՆԵՐԻՆ"

# ԻՍԿ ԴՈՒ ?





Ք